# «ԱՐԾՎԻԿՆԵՐԸ» ՍԵՎԱՆԻ ԱՓԻՆ

Կամոյի շրջանի Ծովազարդ գյուղի դպրոցի բակից դուրս եկան «Արծվիկ» ռազմահայրենասիրական խաղի մասնակից երկու դասակները՝ լրիվ զինվորական հագուստ-կապուստով: Առջևից գնում էին դասակների հրամանատարներ Ասքանազ Խաչատրյանն ու Ոսկան Կարապետյանը: Խաղի ղեկավարն ու հրամանատարն էր զորամասից հրավիրված սպան: Շրջանից ծովազարդցի դպրոցականների ցուցադրական խաղը տեսնելու եկած հյուրերը շուտով ստիպված էին ետ մնալ և մի հարմար բարձունքից հետևել խաղի ընթացքին:

Գյուղից նոր էին դուրս եկել և մինչև Սևանի ափ դեռ բավականին տարածություն կար, երբ բարձունքի կողմից լսվեց ուժեղ պայթյուն և քուլա-քուլա ծուխ բարձրացավ:

— Ուշադրությո՛ւն, գազեր են,— բարձր ու զիլ հնչեց սպայի կանչը և 12—14 վայրկյանում մարտիկներն հագան հակագազերը, ծխի միջով անցան քառասուն մետր:

«Ականապատ դաշտի» միջով մի նեղ, ընդհատվող արահետ էր անցնում: Ով չէր կարողանում հավասարակշռությունը պահել, սահում էր, աչալուրջ դատավորները իսկույն նշում էին իրենց մոտ, իսկ սահողը արդեն «վիրավոր» կամ «սպանված» էր և իրավունք չուներ առաջ շարժվել: Նման խախտման դեպքում դասակը շատ կարևոր միավորներ էր կորցնում:

Բարձունքի հակադիր լանջերին հասած դասակները պետք է արդեն գրոհի անցնեին: Մինչ այդ, հակառակորդից «լեզու» բերելով, յուրաքանչյուրն իր համար պարզեց թշնամու գործողությունների պլանը:

Մարտի ընթացքում աղջիկներն հըմտորեն կապում էին «վերքերը» և դաշտից դուրս բերում «վիրավորներին»:

Մարտի թեժ պահին լսվեց մի նոր, ավելի ուժեղ պայթյուն և բլրի գագաթը բռնկվեց հրդեհով: Հաշված վայրկյաններում դասակները հագան պաշտպանական թիկնոցները, ոտնամաններն ու հակագազերը և սկսեցին հանգցնել «հրդեհը»:

Մնում էր վերջին, բայց շատ կարևոր միավորներ բերող վարժությունը՝ նըռնակի նետումը:

Առջևից գնացող առաջին ջոկատի մարտիկները վրիպումներ ունեցան և երկրորդը կարողացավ հասնել նրանց:

«Արծվիկ» ռազմամարզական, ցուցադրական խաղն ավարտվեց նրանով, որ ջոկատի անդամները հենց Սևանի ափին կարտոֆիլով զինվորական շիլա եփեցին:

Ջոկատն ստեղծվել է 1966 թվականին: «Արծվիկ» և «Փայլակ» ռազմահայրենասիրական խաղերում լավ հաջողությունների է հասել վերջին տարիներին և հանրապետական մրցումներում մի քանի անգամ գրավել մրցանակային տեղեր: Նրանք դպրոցում բացել են փառքի սրահ, որտեղ առայժմ փայտի վրա, իսկ շուտով մարմարի վրա կգրվեն հայրենական պատերազմում զոհված յոթանասունվեց ծովազարդցիների անունները:

ԱՇԽԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆԸ սովորում է Երևանի Մ. Գորկու անվան դպրոցի 8-րդ Բ դասարանում: Ուսման գերազանցիկ է: Շատ է սիրում մայրենի լեզուն և գրականությունը: Ինքն էլ գրելու հաջող փորձեր է անում: Մասնակցել է Սովետական Հայաստանի 60-ամյակին նվիրված պատանի ստեղծագործողների մրցույթին և շահել առաջին մրցանակ: Պարգևատրվել է պատվոգրով և «Արտեկ» պիոներական ճամբարի ուղեգրով:

Հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի
Մ. ՌՍՏՈՒՆԻ



## ԱՇՈՒՆ

Եկան աշնան ցուրտ օրերը,
Նորից սուլեց դաժան
քամին,
Վախից թափվող տերևները
Գորգ փռեցին
ճանապարհին:
Անձրև ու ձյուն լվանում են
Աշնան գորգը կարմիր,
դեղին.
Այդ ճամփով են մի օր
գալու
Ձմեռ պապին ու Նոր
տարին:

## ԳԵՏԱԿԸ

Քչքչում է մեր գետակը
Եվ գարնանը հորդանում,
Փորփրում է իր հատակը
Ափի քարերն է տանում:
Բայց ձմռանը փոշմանում է,
Թաքուն հոսում սառցի
տակ,
Բուքն է թքում նրա վրա,
Քամին տալիս է ապտակ:
Իսկ գարնանը
անդաստիարակ
Գետակն էլի հորդանում,
Մոռանում է թուք ու ապտակ
Եվ չարություն է անում:

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



## ՁՅՈՒՆԸ

Կամաց ու հանդարտ
Իջնում է ձյունը,
Որ հանգիստ լինի
Դաշտերի քունը:
Քաղաքն էլ ահա
Ձյունից ճերմակել,
Փողոց ու տանիք
Վերմակ են հագել:
Պայծառ լուսինն է
Խաղաղ հսկում, որ
Քնած գարունը
Արթնանա մի օր:

Երկու եղբայր, մեկը՝ անուն հանած գրող Հրանտ Մաթևոսյան, մյուսը՝ ճանաչված լրագրող-գրող Հրաչյա Մաթևոսյան: Երկուսն էլ բարձրագույն կրթություն ստանալուց առաջ սովորել են արհեստագործական դպրոցում, ձեռք բերել գրաշարի մասնագիտություն և աշխատել տպարանում: Այդ աշխատանքը չի խանգարել, այլ օգնել է Մաթևոսյան եղբայրներին իմանալու, թե որն է իրենց կոչումը կյանքում: Խմբագրության խնդրանքով Հրաչյա Մաթևոսյանը «Կանգառներ ճանապարհին» վիպակով պատմում է հենց այդ մասին:

# ԿԱՆԳԱՌ-ՆԵՐ ՃԱՆԱ-ՊԱՐՀԻՆ

ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ



## 1. ԱՐ - ՀԵՍ - ՏԻ

Հոտաղը մի աչքը ակոսի եզանն է՝ լուծը չծռի հանկարծ, խոփը չփախչի ու խարակ չլինի... Մանկալն էնպես աչքերը կխոժոռի վրադ, որ կուչ կգաս եզան փորի տակ՝ «աչքերդ գրպանո՞մս են, թե՞ եկել ես, որ լծան վրա քնես: Ես էլ, որ կովի դաշտում քնեի, քնած էլ կմնայի...»: Մի աչքը արևին է՝ ե՞րբ է ճաշթող լինելու, որ մանկալ Գիքորը մեր մեկնած ալյումինե ամանի մեջ մի շերեփ խաշիլ գցի, տաք ակոսի մեջ նստենք ու երանությամբ ուտենք: Մի աչքը հեռուներում է՝ ո՞վ է տեսնում մեր վարը: Մի աչքը ռավելում է՝ մի ճիպտաշափ էլ առաջ գնաս, գութանով, եզներով, մանկալով կմտնես անտառի մեջ ու կխճճվես: Իսկ մեր վարելահողերը անտառների մեջ են: Մի աչքը մանկալի ձեռքին է՝ մանկալի ուժը գընում է, քո ուժը գալիս է: Էգուց դու կիջնես լծից ու կդառնաս մանկալ. մանկալը եզան ուժ ունի, փղի թոք, մեն-մենակ եզ է վեր գցում, պայտում, կդառնաս մանկալ Հրաչը: Արդեն դպրոցական՝ երկու ամառ անց եմ կացնում լծի վրա: Այդ ամառները ինձ դարձրին տասներկու տարեկան: Ակոսներում էնքա՞ն եմ բաց-բաց քնել: Էնքա՞ն եմ գիշերակաց մնացել: Բա գիշերվա վա՞րը: Լուսնյակ գիշերվա վարը: Դու ես, քո եզները, մեկ էլ խոփի տակ ընկնող ու հողի տակ թաղվող աստղերը: Շնորհակալ եմ մանկալ Ղարիբից, նա ինձ ցույց տվեց Եզնարածի աստղերը, բոլոր աստղերի տեղերը: Ինչո՞ւ մենակ ինձ: Բոլո՞ր հոտաղներին: Բայց ես եմ նրա համար արտասանել.

*Լուսնակն անուշ, Հովն անուշ,*
*Շինականի քունն անուշ...*

Ինչ մնաց որ: Յոթերորդը մի կերպ կավարտեմ, կուժովանամ ու կդառնամ

մանկալ: Մանկալ լինես ու հոտաղդ քեզ համար սառը ջուր բերի: Մանկալ լինես ու հոտաղներիդ ցույց տաս եզ-նարածի աստղերը: Մանկալ լինես ու հոտաղներդ եզներ արածացնեն, դու շունչ առնես ակոսի մեջ. ակոսը ուժ է տալիս, հողը հոգնածությունդ առնում է իրեն ու տեղը ուժ է տալիս:

Լավն էն է, որ քեզնից առաջ մեծ կա, մեծ եղբայր կա, թիկունքին նայիր ու ետևից գնա:

Եղբայրս ընդունվեց Կիրովականի մանկավարժական տեխնիկում: Ես նրանից նամակ ստացա: Նամակում գրել էր՝ հազար բարև, իմ կրտսեր եղբայր ջան: Քեզանից շատ եմ խնդրում... Խնդրածն էլ ի՞նչ էր. բոլորին բարևիր՝ բարեկամներին, հարազատներին, ազգականներին, բոլոր հարցնողներին ու չհարցնողներին: Ես, իհարկե, պարտավոր էի բոլորին բարևել, բոլորին էլ կարոտագին ու ջերմագին, բայց ինձ շատ էր ուրախացնում «կրտսեր» եղբայրը: Ոնց որ մի ամբողջ սոմի հաց տան ու ասեն՝ սա միայն քոնն է, մինչև վերջին փշուրը քոնն է: Նամակն էնքան պահեցի, մինչև եղբայրս տասը ամիս հետո եկավ և ասաց՝ ո՞նց ես, կրտսերս:

— Կրտսերը ո՞րն է,— ամաչելով հարցրի:

— Փոքրը:

— Իսկ որ նամակ էիր գրել, նամակի «կրտսեր եղբայրը» ի՞նչ է նշանակում:

— Փոքր եղբայր,— ծիծաղելով ասաց եղբայրս, ապա տխրեց, աչքերին նոնց որ մեկը կծու բիբար քսեց:— Էլ Կիրովական չեմ գնա: Մի ուսումնական տարվա մեջ մի տաք ճաշ չեմ կերել, ձմեռը մեջքս մի անգամ չի տաքացել: Բութ մատս ցրտատար է եղել: Էլ Կիրովական չեմ գնա:

— Բա դու ասում էիր՝ անընդհատ պետք է գիրք կարդաս:

— Գյուղում կկարդամ:

Մայրս զայրացավ, թե էդպես էիր անելու, էլ գիշերները նավթը ինչու՞ էիր փչացնում ու կարդում, հա՛ կարդում: Մարդահաշիվ էի, ես էլ զայրացա, ասացի, որ սովորիր, մարդ դարձիր: Մի գրիչ է, դիր ծոցագրպանդ, գնա դպրոց ու ետ դարձիր, գնա սովորիր, որ ես էլ ետևիցդ գամ, մյուս տարի յոթն ավարտում եմ... Հնար չեղավ: Հայրս հատուկ վեր կացավ ու գնաց իմանալու, թե հո «երեխան թվաբանությունից վերաքննություն չունի՞»: Եկավ ու ասաց, որ երեխան բոլորովին վերաքննություն չունի, գործերը շատ հաջող են, բայց թե ինչու՞ չի ուզում մարդ դառնալ, որ մեկի շարքում էլ մենք լինենք, չի կարողանում հասկանալ: Հետո պարզվեց, որ ոչ թե Կիրովական է գնացել հայրս, այլ Դիլիջան, և այնտեղ նայել են, տեսել, որ վերաքննություն ունեցողների ցուցակում իր տղայի անունը չկա:

Մեր հարս ու մեր ուսուցիչ Անիկենց տուն արդեն երկրորդ ամառն էր մի մարդամոտ ընտանիք էր գալիս՝ ամառը հանգստանալու: Ամուսիններ էին, երեք երեխայով: Հայրը ում տեսնում էր, ասում էր շատ բանաստեղծական անկյուն է ձեր գյուղը, այստեղ ծնվողները իրավունք չունեն բանաստեղծական հոգի չունենալու: Նա ուսուցիչ էր, վաստակավորի կոչում ուներ, բանաստեղծություններ էր գրում: Երեխաները շատ կիրթ էին ու կատակասեր:

Որովհետև ես ավարտել էի յոթերորդ դասարանը, որովհետև ծնողներիս համար դժվար էր երկու տղա երեխա հարևան գյուղը սովորելու ուղարկելը, որը

տասնվեց կիլոմետր գնալ ու գալու համար տրեխ հագցրու, սնունդ հասցրու, որ ծնկներում ուժ լինի, հայրս մորս ուրախ համաձայնությամբ, տուն կանչեց ընկեր Հովհաննիսյանի ընտանիքին, հավ մորթեցինք, ձվածեղ արեցինք, մածուն կար, և հաց ուտելու ապահնքում էլ հայրս ասաց.

— Ընկեր Հովհաննիսյան, ինչքան էլ չլինի, քաղաքներում ծանոթից, բանից կունենաս մեր տղերքին մի լավ տեղ տեղավորելու գործով:

— Ո՞ր քաղաքներում,— հարցրեց Վահան Հովհաննիսյանը:

— Երևանում: Միայն Երևանում:

— Իսկ ինչու՞ ես ասում՝ քաղաքներում, երբ խոսքը միայն Երևանին է վերաբերում,— հարցրեց Վահան Հովհաննիսյանը:

— Դե, Երևանը մեր մայրաքաղաքն է, ջուխտ տղա եմ ուզում Երևան ուղարկել, հոգնակի չխոսե՞մ:

Վահան Հովհաննիսյանը էնքան գեղեցիկ էր ծիծաղում, տիկին Ամալյան միայն ժպտում էր, բայց տնից հեռանալուց հետո ծիծաղելու է փառ-փառ, մեծ տղան՝ Հենրիկը ծիծաղից ջուր է դարձել, Լևոնը քրոջն է նայում՝ հրաշալի մածուն է, մենք ուտենք, հետո կծիծաղենք...

Գեղեցիկ օր էր. առաջին անգամ մոտիկից շփվում էինք մայրաքաղաք Երևանից մեր գյուղ հանգստանալու եկած մի լավ ընտանիքի, հովեկ մարդկանց հետ:

Եվ Վահան Հովհաննիսյանը, որը, իրոք, և՛ բանաստեղծ էր, և՛ վաստակավոր ուսուցիչ, սկսեց փորձել մեր գիտելիքները:

— Հրանտին,— ասաց նա,— ցանկանում եմ ստուգել տողադարձից:

— Հանգիստ կաց,— ասաց մայրս,— իմ տղին տողադարձից հասնող չի լինի:

Ստուգեց, ապա գրավոր տվեց, ստուգեց, քննեց, գերազանց նշանակեց և որոշեց տեղը.

— Երևան, արհեստագործական երրորդ ուսումնարան:— Դարձավ ինձ:— Դու ի՞նչ ես ուզում դառնալ:

— Ես արդեն դարձել եմ. յոթս ավարտել եմ,— ինքնավստահ ասացի ես:

— Դա քիչ է: Գիտեմ, դու լուծ ու սամի, ման ու եզ շատ ես սիրում, բայց դուք վերջին հոտաղներն եք, տրակտորները բոլոր լծկաններին շարքից կհանեն:

— Միասին, միասին,— ասաց հայրս,— թող իրար նեցուկ լինեն:

— Բա ոնց, թող երկուսն էլ միանգամից մարդ դառնան,— ասաց մայրս: Իսկ Վահան Հովհաննիսյանն ասաց, որ ինքը շատ է ուրախանում, որ լսում է լավ բառեր, օրինակ, նեցուկ բառը լսելու համար ինքը շատ ուրախ է: Հայրս ասաց, որ ինքն էլ ուրախ է, որ դուք նեցուկ եք լինում մեր տղաների ապագայի համար:

Որեմն՝ ո՛չ Ալավերդի, ո՛չ Ստեփանավան, ո՛չ Կիրովական, այլ միանգամից Երևան: Ա՛յ քեզ Վահան Հովհաննիսյա՛ն: Ա՛յ քեզ մե՛նք:

— Վահան ջան,— ասաց հայրս,— քույրս երեք տղա ունի: Երեքի անունն էլ մեծատառ Ս-ով է սկսվում: Քրոջս ամուսինն էլ պատերազմից չի եկել: Մեծին էլ թևիդ տակ առ: Դե, տեսնում ես, մեր տունը ծմակի պոնկին է, տղաներս շատ են շվաքում մեծացել: Իսկ քրոջս տղան գյուղամիջի տղա է: Ուժեղ, աչքաբաց: Քաղաք տեղն էլ իմ տղերքին կնայի:

— Սեյրա՞նը,— հարցրեց Վահան Հովհաննիսյանը: Մենք զարմացանք,

որ անունը տվեց։— Նա էլ է տողադարձումից ուժեղ, նա էլ է ընդունվելու նույն ուսումնարան։

— Այո՜,— ասաց հայրս,— աստված չանի, վաղը որ նրկից կռիվ-բան լինի, քո տղերքի փոխարեն ես նրկից կգնամ կռիվ։ Ես արդեն ձևը սովորել եմ...

Լևոնը ծիծաղում է։ Մայրը նկատողություն է անում։ Իսկ Լևոնը ծիծաղի միջից ասում է.

— Ախր չլսեցիք, ասում է՝ քույրս երեք տղա ունի, երեքի անունն էլ մեծատառ Ս-ով է սկսվում... բայց անունները չասաց։

Իմ խաս հորաքույր Արզուքանը իր Սեյրան տղի համար, իր ախպոր երկու տղի համար մավի կտորից շալվարբլուզ կարեց։ Մեր Սոնա նանը դողդոջ մատներով կոճկեց մեր բկախեղդ կոճակները, որ չմրսենք, բրդե տաք գուլպաներ հագանք, Սեյրանը կոշիկներով, մենք ռեզինե տրեխներով ճամփա ընկանք քաղաք։ Հա՜, իմ նան Սոնայից սկսած բոլորը պաչում էին մեր ճակատները ու ճամփու էին դնում բարի մաղթանքներով՝ լա՜վ մարդ դարձեք...

Երևան գնացող Լադիկը մեզ հասցնելու էր քաղաք, հանձնելու էր ուսումնարանի դիրեկտոր Հովհաննես Հովհաննիսյանին, կարող էր հոգալ մի երկու օրվա հարցը, էլ գործ չուներ։

Արդեն, երբ պետք է բաժանվեինք, գյուղի ծայրին մայրս դարձավ Վահան Հովհաննիսյանին.

— Էդ ուղարկածդ տեղը որ լավն է, ինչու՞ քո Հենրիկին ու Լևոնին էլ չես հանձնում։

Վահան Հովհաննիսյանի տղերքը առավոտ շուտ վազում էին, մտնում սառը գետի մեջ, լողանում, ինչ էլ անում էին, անում էին նրա համար, որ կոփվեն, առողջանան, ուժեղ լինեն։

— Հենրիկս,— ասաց Վահան Հովհաննիսյանը,— երազում է ընդունվել գեղարվեստա-թատերական ինստիտուտ։

— Թող իմ տղերքն էլ ընդունվեն,— ասաց մայրս։

— Տասներորդը պետք է ավարտեն, պետք է հատուկ ընդունակություններ ունենան։

— Եղավ,— ասաց հայրս,— իսկ մյուսը ինչու՞ չի ընդունվում իմ տղերքի հետ, իրար նեցուկ կլինեն։

— Նա էլ ուզում է երկրաբան դառնալ։

— Թող մեր տղան էլ դառնա։

— Ախր պետք է տասը ավարտի։

— Լավ տեղերը ձեզ համար պահում եք, տակի մնացածով նոր մեզ լավություն անում։ Իսկ աղջի՞կդ...

— Նա անգլերենի մասնագետ է ուզում դառնալ։

— Էս քաղաքի ժողովուրդը օձին է, օձին,— ասաց մայրս, արցունքներն աչքերին համբուրեց մեզ, խորհուրդ տվեց, որ մեզ բաժին ընկած տեղն էլ էնպես լավ սովորենք, որ ընկեր Հովհաննիսյանին խայտառակ չանենք։

— Պետությունը երեք տարի ձրի հաց է տալիս, հագուստ է տալիս, մասնագիտություն է սովորեցնում,— ասաց Վահան Հովհաննիսյանը,— թող էնպիսի մարդիկ դառնան, որ տեսնողն ասի՝ հալալ է ձեզ պետության տված հացը։

— Հինգ տարի էլ ես եմ պետության հացը կերել,— հառաչելով ասաց հայրըս։

— Դու կռվել ես,— ասաց Վահան Հովհաննիսյանը,— դու վիրավոր ու

հաղթանակած եկել ես, թող սրանք էլ գնան սովորեն, մարդ դառնան:

Մենք ճամփա ընկանք:

— Ու՞ր:

— Երևան:

— Ի՞նչ կա:

— Արհեստի:

— Որտե՞ղ:

— Արհեստագործական համար երրորդ ուսումնարանում:

— Քանի՞ տարով է:

— Երեք:

— Ի՞նչ եք դառնալու:

— Կուզենան գրաշար, կուզենան մեքենայի գրաշար, կուզենան տպագրիչ: Իրենք են ընտրելու:

— Իսկ եթե ձեզ մնա՞:

— Լինոտիպիստ՝ մեքենայի գրաշար: Մենք տողադարձի կանոնները լավ գիտենք:

— Դա ի՞նչ մասնագիտություն է, որ ընտրել եք:

— Ղազարոս Աղայանն էլ է գրաշար եղել:

— Իսկ ինչու՞ չեք գնում ուրիշ տեղ սովորելու:

— Միջնակարգ ավարտելու համբերություն չկա: Պետությունը մեզ հաց է տալիս, հագուստ է տալիս: Պետությունը մեզ արհեստ է սովորեցնում: Երկրին մասնագետներ են հարկավոր:

Այսպես հասանք Երևան: Տերյան փողոց, 91: Մեզ սիրով ընդունեց Վահան Հովհաննիսյանի ընկերը՝ ուսումնարանի դիրեկտոր Հովհաննես Հովհաննիսյանը: Խոսեց, նայեց մեր փաստաթղթերը: Կանչեց հայոց լեզվի ուսուցչուհի Լուսյա Նիկոլյանին և ասաց.

— Հեռավոր գյուղից են: Ուշադիր եղիր: Գրաշարական խումբ եմ գցում:

1952 թվականի օգոստոսի 28-ն էր:

*(շարունակելի)*

# ՉԳՈՒՇԱՎՈՐ ԵՂՆԻԿԸ

*ՎԱՐԴԳԵՍ ԲԱՔԱՅԱՆ*

Առյուծն պկռր
Վախճանվեց մի օր:
Սուգ հայտարարվեց անտառում
ամբողջ:
Ամեն կենդանի և ամեն մի որջ
Սև կապեց ժիկույն:

Մի մատաղ եղնիկ ասաց իր մորը.
— Նա չէ՞ր հոշոտեց իմ խեղճ
եղբորը...
Ես ինչու՞ սգամ առյուծի մահը...
— Սու՛ս,— ասաց մայրը,
Կուչ եկավ ահու,—
Թագավորները վտանգավոր են
Նույնիսկ ետմահու:

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*





Թիթեռնիկը գիտեր, որ ապրելու է մեկ օր: Միայն մեկ: Եվ հուզվում էր: Իհարկե, երբ առջևումդ դեռ շատ օրեր կան, կարող ես քեզ թույլ տալ նաև մեկ-երկու օր հենց այնպես ապրելու: Բայց երբ միայն մեկ օր ունես...

Ի՜նչ մեծ շնորհ է թվում այդ մեկ օրը: Չէ՞ որ կարող էր և չլինել: Չէ՞ որ այդ մեկ օրվա տերը դու ես՝ բաց-ոսկեգույն թևիկներով թիթեռնիկը:

Եվ թիթեռնիկը որոշեց իր մեկ օրն այնպես ապրել, որ կորած չլինի:

Նստել էր ճանապարհին հոգնած ճամփորդն ու հանգստանում էր: Նա




ԱՆԱՀԻՏ ՓԱՐՍԱՄՅԱՆ

դեռ երկար պիտի քայլեր: Այդպես հոգնած էլ՝ քնեց: Թիթեռնիկը տեսավ, թե ինչպես խոտերի միջով դանդաղ դեպի ճամփորդն է սողում խայտաբղետ օձը: Թիթեռնիկը թևիկներով դիպավ ճանապարհորդի շրթունքներին ու աչքերին, մինչև որ արթնացրեց նրան:

Իսկ և իսկ ժամանակին էր, որովհետև օձն արդեն մոտ էր: Ճանապարհորդը փրկվեց:

Թիթեռնիկը շարունակեց ճամփան:

Ծաղիկներից իմացավ, որ ծանոթ տատիկը կուրացել է: «Իսկ չի՞ կարելի նրան բուժել»,— հարցրեց թիթեռնիկը:

«Կարելի է,— ասաց ծեր մայրենին,— բայց հեշտ չէ: Պետք է վերցնել մի կաթիլ աղբյուրի ջուր, ավելացնել մի քիչ արևի լույս և խառնել նրանց մեջ թիթեռի թևիկների փոշի ու քսել տատիկի աչքերին: Բայց ո՞ր թիթեռը կհամաձայնի իր մեկ օրվա կյանքից վաղաժամ զրկվել»:

Թիթեռնիկը մտածեց, մտածեց ու հարցրեց ծաղիկներին. «Այս կողմերում աղբյուր կա՞»:

«Կա,— ասաց մայրենին,— բայց չէ՞ որ դու միայն այս օրն ունես ապրելու, թիթեռնիկ, ապրեիր գոնե մինչև վերջ»:

«Կուզենայի մինչ այդ օգնել տատիկին, միևնույն է, իմ կյանքն այսօր ավարտվում է, իսկ տատիկը կտեսնի, նա դեռ ապրելու է»:

Եվ թիթեռնիկը թռավ աղբյուրի մոտ: Վերցրեց նաև արևից մի շողիկ: Մնում էր իր թևերի փոշին: Ու ճամփա ելավ տատիկի մոտ: Շտապում էր. չէ՞ որ պետք է այնտեղ լիներ մինչև արևի մայր մտնելը:

Տատիկը տխուր նստած էր դռանը, երբ թիթեռնիկը մոտեցավ ու նրա աչքերին քսեց դեղը: Տատիկն սկսեց տեսնել: Նա երեխայի պես լալիս էր և օրհնում թիթեռնիկին:

Իսկ թիթեռնիկը մեռնում էր գոհ, որ կարողացավ բարի գործերով երկարացնել իր կարճ կյանքը:

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 39. ՀՈՎՀԱՆՆԵ՞Ս, ԻՎԱ՞Ն, ՋՈ՞Ն, ԺԱ՞Ն, ՋԻՈՎԱՆՆԻ՞, Ի՞ՆՉ Է ՔՈ ԱՆՈՒՆԸ

Լեզվի մեջ շատ բան պայմանական է. եթե աթոռը սեղան կոչվեր, դրանից ոչինչ չէր փոխվի: Հայտնի է օրինակ, որ Մանուկ Աբեղյանը ելույթ բառը ընտեղծել էր ելուստ-ի իմաստով, ելուստը՝ ելույթ-ի, բայց կյանքում հակառակը պատահեց, և դրա մեջ մենք տարօրինակ ոչինչ չենք տեսնում: Ամեն մի բառ կրում է այն իմաստը կամ իմաստները, որ տվյալ լեզվով խոսող ժողովուրդը պայմանավորվում է տալ տվյալ բառին: Բանասեր Ֆրանկլին Ֆոլսոմը պատմում է, որ Ջոնաթան Սվիֆտը լիլիպուտ բառը պարզապես հորինել է չեղած տեղից: Կամ՝ մի անգամ հայտնի մի մաթեմատիկոս չի իմացել, թե ինչ անունով կոչի այն թիվը, որ բաղկացած է 1 թվանշանից և հարյուր զերոյից: Հարցրել է եղբոր իննամյա տղային: Սա ասել է՝ գուգոլ: Եվ գիտության մեջ այդ բառը դարձել է այդ վիթխարի թվի պաշտոնական անվանումը: Պատահում է և այնպես, որ նախնական պայմանն աստիճանաբար փոխվում է, և բառը սկսում է կրել մի այլ, նախնականից տարբեր, նույնիսկ հակադարձ իմաստ: Ժամանակին միամիտ ասելով հասկանում էին անկեղծ, ազնիվ, հիմա՝ պարզամիտ, դյուրահավատ, օտար բառով ասած՝ նայիվ-ն ենք հասկանում: Ժամանակին պարապել ասելով պարապ, անգործ լինելն էր հասկացվում, հիմա՝ ճիշտ հակառակը՝ զբաղված լինելը. ուսանողը պարապում է, մի խանգարեք:

Պայմանական են մարդկանց անունները ևս: Երբ երեխա է ծնվում՝ ծնողները ծննդյան վկայական են վերցնում, ուր նշվում է նորածնի անունը, այն անունը, որով ծնողները պայմանավորվում են կոչել իրենց զավակին: Բնավ էական չէ Շուշանի՞կ կկոչվի աղջիկը, թե Սեդա, Հակո՞բ անունը կտան տղային, թե Վիգեն: Եվ, իհարկե, ծնողներին չի կարելի կշտամբել, որ Քաջայր անունը կրող տղան, հասակ առնելով, աչքի չընկնի քաջությամբ, իսկ Ժիրայրը բնավ ժիր չլինի:

Ծնողներին կարելի է կշտամբել, և խստորեն, այն դեպքերում, երբ անուններ ընտրելիս իրենց անզսպելի օտարամոլությունը, ավելին՝ տգիտությունը, հոռի ճաշակը, փաթաթում են խեղճ երեխայի վզին:

Մեր նախորդ զրույցը վերաբերում էր լեզվական փոխառություններին, մի երևույթ, որ հատուկ է ամեն մի կենդանի լեզվի: Դա վերաբերում է նաև հատուկ անուններին: Հնից ի վեր մեր ժողովուրդը ևս ուրիշ ժողովուրդներից փոխ է առել բազմաթիվ հատուկ անուններ և դարերի ընթացքում դրանք հայացել են այնպես, որ հիմա շատերը

կզարմանան, եթե լսեն, որ Գուրգեն անունը պարսկերենից է եկել (որ նշանակել է գայլի ձագ) կամ Հովհաննեսը հունարեն է և նշանակում է աստվածաշնորհ: Ինչպես ամեն մի ժողովուրդ, հայերը ևս դարերի ընթացքում փոխ են առել, ազգայնացրել ու ստեղծել են հատուկ անունների սեփական շտեմարանը, որից և գլխավորապես օգտըվում են նորածիններին անուն շնորհելիս: Իհարկե, շեղումներ էլ լինում են. անունների փոխառությունները շարունակվում են մեր ժամանակներում ևս, բայց չափով, չափի զգացումով: Իսկ մեր ժողովրդի մեջ քիչ չեն մարդիկ, որ չափ ու սահման չեն ճանաչում: Սփյուռքահայ լրագրողներից մեկը վերջերս մի հոդված էր հրապարակել «Հայկական անունը մաս կկազմե մեր ազգային դիմագիծին» վերնագրով: Այդ հոդվածն ուղղված է օտարամոլության դեմ. «Ժամանակին մեր հայրերուն անունը կժառանգեին մեր զավակները, և այս՝ հպարտություն մեզ: Անմիջապես շարունակենք, որ հիմա ալ կա այդ սովորությունը, սակայն գունափոխված կամ մոտայիկ դարձած: Հակոբը եղած է Ժաք կամ Ճեք (երբեմըն և Ճեքի), Հովսեփը եղած է Ժոզեֆ, Սարգիսը՝ Սերժ:

Եվ շարքը կերկարի. նայեցեք ձեր շուրջը:

Չխոսինք տակավին ոչ հայկական ուրիշ անուններու մասին, ինչպես՝ Ժորժ, Ալպեր, Արթուր, Ռոպեր, որոնք արմատացած են մեր մեջ, դուրս մղելով նույնիսկ Վազգենը, Վահեն ու Վարուժանը:

Հարցը ավելի կբարդանա և առավել լուրջ բնույթ կկրե, երբ մոտենանք մեր փափկասուն օրիորդներուն անուններուն: Այստեղ շարքը գլխապտույտ արագությամբ և բազմաճյուղ կերկարի. Ռիմա, Ռիթա, Նաթալի, Իրմա, Միռնա, Այտա, Ժաքլին, Նորմա, Լիռնի, Նելլի, Քարոլ, Ալին, Լենտա, Թինա, Լարա...»:

Կարո՞ղ ենք ասել, թե միայն սփյուռքահայության մեջ է տարածված այս տխուր երևույթը: Դժբախտաբար, չենք կարող ասել:

Հնարավոր է այսպիսի մի հարցում. ի՞նչ կա որ, հատուկ անունն էլ պայմանական մի բան է և էական չէ, թե ինչ անունով են կոչում մարդուն:

Այո՛, պայմանական է, բայց դա էլ իր իմաստն ունի: Ո՞րն է այդ իմաստը: Ջնենք մեծաթիվ օրինակներից մեկը: Շատ անուններ ժողովուրդները, նաև մեր ժողովուրդը, առել են աստվածաշնչից: Դրանցից մեկն էլ Հովհաննեսն է, որ նույնն է, ինչ Իվանը՝ ռուսերենում, Ժանը ֆրանսերենում, Ջոնը՝ անգլերենում, Յոհանը՝ գերմաներենում, Ջիովաննին՝ իտալերենում և այլն, ենթարկվելով յուրաքանչյուր լեզվի հնչյունափոխման և տառադարձման ներքին օրինաչափություններին: Լսելով դրանցից որևէ մեկը, դուք անսխալ կարող եք կռահել, թե ինչ ազգության է պատկանում անվանակիրը: Հազիվ թե իտալացին իր զավակի անունը Ջոն կամ Յոհան դնի կամ ռուսը, իր հարազատ Իվանը թողած, իր տղայի անունը Ժան կամ Ջոն դնի: Մինչդեռ մենք այդպես էլ վարվում ենք՝ զրկելով մարդուն իր ազգային ինքնությունն իր անվամբ ի հայտ դարձնելու իրավունքից:

Ոչ մի ժողովուրդ, նույնիսկ անգլիացիները այնքան շեքսպիրյան անուններ չունեն, որքան մենք՝ Օֆելյա, Համլետ, Դեզդեմոնա, Ռոմեո, Ջուլիետ և այլն, որոնց կյանքում կոչում են Օֆիկ, Համո, Դեզիկ, Ռոմիկ, Ջուլիկ և այլն: Այսպես շեքսպիրյան անուններըն աղավաղվում են այնպես, ինչպես ուրիշ մեծաթիվ օտարամուտ անուններ՝

Նապոլեոն-Նապո, Լյուդվիգ-Լյութո, Թելման-Թելո, Ֆրունզե-Ֆրունզիկ, Սվետլանա-Սըվետ, Էմերալդա-Էմիկ, Էվելին-Էվիկ, Իզոլդա-Իզիկ և այլն, և այլն: Խեղաթյուրումների այս շարքը դուք հեշտությամբ կարող եք ավելացնել:

Բայց դեռ ավելի վատը կա, շատ ավելի վատը, երբ խեղճ երեխաներին կոչում են պարզապես անհեթեթ անուններով, այնպիսի անուններով, որոնց համար նրանք, մեծանալով, ամաչում են:

Ամեն ինչ կարծես իր պատճառն ու բացատրությունն ունի, բայց ինչքան ուզում ես գլուխ կոտրիր, միևնույն է, չես կարող բացատրել, թե մարդիկ ինչու են ուզում իրենց աղջկան ոչ թե Հասմիկ, այլ Էսմիկ կոչել, ոչ թե Վարդ ու Վարդուհի, այլ՝ Ռոզա, ոչ թե Լուսիկ կամ Լուսինե, այլ՝ Սըվետ, ոչ թե Վիգեն, այլ՝ Վիլիկ, ոչ թե Հակոբ, այլ՝ Ժակ, ոչ թե Գևորգ, այլ Ժորա կամ Ժորժիկ և այլն, և այլն: Աղջիկների ու տղաների գեղեցիկ, կոկիկ, հնչեղ, ընտիր անուններով շատ հարուստ է հայերեն հատուկ անունների շտեմարանը, որից շատերը երբեմն են դարձնում չես էլ հասկանում, թե ի՛նչ պատճառով: Բայց ինչ էլ լինի պատճառն ու բացատրությունը՝ եզրակացությունը մնում է նույնը՝ երևույթը շատ է տգեղ ու անցանկալի: Այնպես որ, սիրելի ընթերցողներ, լավ կլինի, եթե դուք էլ ուշադիր լինեք ու հետևեք, որ ձեր նորածին քույրերին ու եղբայրներին, ձեր բարեկամների ու ծանոթների զավակներին կնքեն այնպիսի անուններով, որ նրանք հետո ծիծաղատեղ չդառնան, դուք էլ ձեր ուժերի ներած չափով առնեք անհարկի օտարաբանությունների առաջը նաև հատուկ անունների ասպարեզում:

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

# ԵՐԲԵՔ ՈՒՇ ՉԷ

(ժողովրդական)

Երկու տեսակ մարդ կա կյանքում,
Մեկն ապրում է իբրև խոտ,
Մեկը մի ծառ է պտղատու
Միշտ վեր ձգված, երկնին մոտ:

Նա որ խոտ է՝ կարճ է կյանքը,
Աշուն եկավ՝ չի շնչի,
Ձմեռ եկավ՝ ձյուների տակ
Կանհետանա, կկորչի:

Նա որ մի ծառ է պտղատու,
Ամեն տարի, աշունքին
Իր պտուղը տալուց հետո
Գարնանն էլի կծաղկի:

Ո՞վ է ձեր մեջ խոտն անպտուղ,
Ո՞վ է ծառը, մտածեք,
Որոշեցեք մտքի մեջ, լու՛ռ,
Ուղղվելն ուշ չէ, իմացեք:

# ԻՇՈՒԿԸ

(ժողովրդական)

Ծանր աղը շալակին
Գետն էր անցնում նա,
Վախենում էր սայթաքի,
Ջրին կուլ գնա:

Եվ ճիշտ էլ որ՝ սայթաքեց,
Ինչ վտա՜նգ, ինչ ցա՜վ,
Բեռը ծանր, բեռը մեծ
Հալվեց, փոքրացավ:

Հաջորդ անգամ էշը մեր
Սպունգ էր տանում,
Երբ գետ մտավ, անհամբեր
Սուզվեց ջրերում:

Բեռն սկսեց ծանրանալ
Մեր խեղճ իշուկի,
Ու բեռի հետ նա մնաց
Գետի հատակին:

# ՀՈԳԱՏԱՐ ՁԵՌՔԵՐԻ ԽՄԲԱԿԸ



Նորադուզը Կամոյի շրջանի մեծ գյուղերից է, ունի մոտ հազար տնտեսություն և Սևանի ափից այնքան էլ հեռու չէ: Հարուստ է պատմական հուշարձաններով՝ զույգ եկեղեցի, մատուռ և... խաչքարերի բացօթյա թանգարան: Ժամանակի ընթացքում խաչքարերից շատերը թեքվել էին, ընկել, կորել ոտքի տակ: Այսինքն դրանք արդեն խնամքի, հոգատար ձեռքի կարիք ունեին: Իսկ այդ խաչքարերից յուրաքանչյուրը ոչ միայն ճարտարապետական մեծարժեք գործ էր, այլև իր դարի, իր ժամանակի վկան ու ինչ-որ չափով նաև՝ պատմիչը:

— Տարիներ առաջ էր: Մենք պիոներների հետ էքսկուրսիայի մեկնեցինք խաչքարերը ուսումնասիրելու,— պատմում է Նորադուզի №1 միջնակարգ դպրոցի նախկին ջոկատավար, այժմ գրադարանավարուհի Օլգա Խաչատրյանը,— ես պատմում էի, թե խաչքարերը զարգացման ինչպիսի շրջաններ են ունեցել, մոնումենտալ ձևերից ինչպես են անցել զարդապատկերների նրբացման ու յուրատիպ ոճավորման: Պատմական արժեքներ չգնահատող երեխաները խաչքարերի վրա թողել էին խայտաբղետ մակագրություններ, քերվածքներ ու խզբզանքներ: Խաչքարերի շրջակայքը անբարետես էր:

Հաջորդ օրը, դպրոցում քննարկվում է էքսկուրսիայի արդյունքները, որոշվում ստեղծել «Հուշարձանների պահպանության» խմբակ, որի կազմում ընդգրկվում են ոչ միայն պիոներները, այլև բարձր դասարանցիները:

Խմբակի անդամները գնում, բացօթյա թանգարանը կարգի են բերում, խաչքարերի շրջակայքը մաքրում, այնուհետև ամենօրյա բացատրական աշխատանք են տանում պիոներ-դպրոցականների շրջանում: Բայց դա դեռ բոլորը չէր: Թեքված կամ արդեն ընկած տասնյակ խաչքարերը ուղղել, կանգնեցնել և լավ ամրացնել էր պետք:

Խաչքարերը և տարածքը լրիվ կարգի բերելու, մաքրելու նպատակով անցյալ տարի նրանք դիմեցին դպրոցի դիրեկցիայի օգնությանը: Եվ գարնանային մի օր դպրոցի երրորդից-տասներորդ դասարանցի աշակերտները գնացին այնտեղ, ընկած, թեքված խաչքարերը ուղղեցին, ամրացրին, իսկ պիոներները նորից մի լավ մաքրեցին խաչաքարերի շուրջը: Այդ օրը բացօթյա թանգարանից դուրս բերվեց երեք բեռնատար մեքենա քար ու զանազան թափոններ, ամրացվեցին, մաքրվեցին տասնյակ խաչքարեր: Տեղատարափ անձրևը միայն ստիպեց դպրոցականներին ընդհատել այդ օրվա աշխատանքը:

Դարերի ընթացքում խաչքարերը ծածկվել էին քարաքոսի կարծր շերտով, թաքցրել նուրբ զարդապատկերները ու նախշերը: Վերջերս գյուղ այցելած հնագետներից աշակերտները իմացան, որ այդ քարաքոսերը հեռացնելու միակ և հուսալի միջոցը ավազաջուրն է, որը բարձր ճնշման տակ պիտի սրսկել քարաքոսերին:

Երբ մեկնարկ վերցրեց «Յուրաքանչյուր հուշարձանին՝ անձնագիր» օպերացիան, նրանք արդեն կազմել էին Նորադուզի ու Կամոյի շրջանի տարածքում գտնվող մյուս հուշարձանների մասին պատմող ալբոմները:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ*

## Խաղողի վազը

Խաղողի վազը մանկիկ է նուրբ,
Ծածկում են հողով, որ չմրսի։
Տաքուկ վերմակ ես, հայրենի հող,
Ու տաքուկ գիրկ ես դու մայրիկի։
Ցրտահար վազը չի տա խաղող,
Ոչ էլ պապիկին կտա գինի,
Չպաշտպանի թե հողը նրան՝
Նա կխռովի մանկան նման։
Մի օր ասացի.— Վազիկ իմ հեզ,
Որտեղի՞ց քաղցրը քո ունեցած։
— Արևից, հողից խնդրում եմ ես
Եվ նվիրում եմ բոլոր մարդկանց։

## Գարնան ծիծաղ

Ճերմակ ծաղկունքն է փռվել լռին,
Կարծես թե հանդին նստել է ձյուն,
Մամուռն է բուրում՝ փարված քարին,
Կապույտ շուրեր է հագել հեռուն։

Առաջին անգամ հանդ են եկել
Գառները նախշուն ու նորածին,
Շնորհակալ են աշխարհի չափ,
Իրենց հանդ բերող գառնարածին։

Ցորենի արտում համերգ կա նոր,
Լորն ու արտույտն են վերադարձել,
Եվ ծիծաղում են երկինք ու հող,
Ջահելացել է աշխարհը ծեր։



## Երեք բալ

Երեք բալ տեսավ բաղենու վրա,
Եվ ուրախացավ տղան մտքի մեջ,
Բարձրացավ ծառը, այն ճյուղը կոտրեց,
Որ ճյուղի վրա տեսավ երեք բալ։
Լաց եղավ ծառը երեք տարեկան,
Մայր հողում նրա արմատը ցավեց,
Այդ տարի ծաղկեց առաջին անգամ,
Ու հազիվ, հազիվ երեք բալ տվեց։
Մինչև ծիլ հանեց, նա հազար ձնի
Տառապանք տեսավ լռին ու երկար,
Հողի մեջ շնչեց կարոտն արնի
Եվ կարոտով էլ եկավ լույս աշխարհ...

*Նկ. ՄԱՐԳԱՐԻՏ ՓԱՐԵՄՈՒԶՅԱՆԻ*






# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՈՉ ՍՈՎՈՐԱԿԱՆ ՏՈՆ

Մի քանի տարի առաջ, երբ ես աշխատում էի Գերմանական դեմոկրատական հանրապետությունում, աղջկաս՝ Լենայի հետ ճամփորդեցինք: Ուզում էինք լինել Բոցուենում և այլուր, որտեղ ապրում են սերբերը, ԳԴՀ-ի միակ ազգային փոքրամասնությունը: Մոտենում ենք Կամենեց հին քաղաքին: Արդեն երևում են կարմիր կղմինդրով ծածկված սպիտակ շենքերը, քաղաքային ռատուշայի սրածայր աշտարակը: Քաղաքի ծայրամասում ստիպված կանգ առանք: Մեր առջև ավտոմեքենաների երկար շարան էր:

— Ինչու՞ ենք կանգնել, ի՞նչ է պատահել,— հարցրինք վարորդին:

— Իսկույն երևում է այստեղացի չեք,— ժպտաց մեր խոսակիցը:— Այսօր մեր քաղաքի երեխաները Հուսիտների օրն են տոնում: Ստիպված եք երկու ժամ սպասել. մինչև Հուսիտների շքերթը չանցնի, մեքենաները չեն շարժվի...

— Իսկ ովքե՞ր են հուսիտները,— հարցրեց Լենան:

—Տասնհինգերորդ դարի սկզբներին Հուսիտների շարժումը ծավալվեց ամբողջ Եվրոպայում: Ապստամբների առաջնորդը Պրագայի համալսարանի գիտնական Յան Հուսն էր, իսկ զորավարը՝ փորձված մարտիկ Յան Ժիժկան: Հուսիտների զորքը հաղթական առաջ էր շարժվում, խորտակելով ֆեոդալական ամրոցները, խաչակիրներին փախուստի մատնելով: Սաքսոնիայում նրանց ճամփին հզոր ամրոց Կամենեցն էր կանգնած: Հուսիտները քաղաքը պաշարեցին: Միջնադարի սովորությամբ ամրոցի պաշտպաններին վերջնագիր ներկայացրին. եթե քաղաքն առանց կռվի չհանձնվի, այն կոչնչացվի... Վերջնագրի ժամանակը լրացավ, հնչեց հարձակման ազդանշանը: Հանկարծ քաղաքի դարպասները բացվեցին և հուսիտների ճամբար շտապեց երեխաների շարասյունը: Երեխաների ձեռքերին ծաղկեփնջեր կային: Նրանք ուղղվեցին Յան Ժիժկայի վրանը:

— Մեծ զորավար, մի կործանիր մեզ, մեր հարազատներին: Խնայիր մեր տները,— ասացին նրանք ապստամբների առաջնորդին:

Զորքը և առաջնորդի շքախումբը երկար ժամանակ լուռ կանգնած էր: Լռում էր և ինքը՝ Ժիժկան:

— Հարձակումը դադարեցնել,— ասաց նա վերջապես:— Պաշարումը վերացնե՛լ:

Զինվորները վերցրին երեխաների ծաղկեփնջերը, կերակրեցին նրանց և տուն ուղարկե-

ցին: Յան Ժիժկան քաղաքաբնակներից խույս վերցրեց հուսիտների դեմ դուրս չգալ, և իր զորքը տարավ դեպի հարավ...

Այդ օրվանից ամեն տարի օգոստոսի 24-ին Կամենեց քաղաքի երեխաները տոնում են Հուսիտների օրը,— ավարտեց մեր նոր ծանոթը: Իսկ մեր կողքից գնում էին կարմիր վզկապավոր երեխաների շարասյուները. նրանք ծաղիկների փնջեր էին տանում և սերբերեն ու գերմաներեն ուրախ երգեր երգում:

Հանկարծ մենք հարազատ մեղեդի լսեցինք:

— Թող լինի միշտ արևը, թող լինի միշտ երկինքը...— ուրախ ձայնակցեց Լենան:

— Ահա այսպես երեխաները երգերով կանցնեն քաղաքով, հետո կբարձրանան այն բլրի վրա, որտեղ ըստ ավանդության եղել է Յան Ժիժկայի վրանը: Այնտեղ նրանք ամբողջ օրը կխաղան, խարույկների շուրջը պար կբռնեն, կերգեն: Իսկ մայրամուտին տուն կդառնան:

Մեքենաներին վերջապես թույլատրեցին շարժվել: Ամբողջ ճանապարհին ես և Լենան խոսում էինք պիոներների այդ զարմանալի տոնի մասին:

*Թարգմ.* Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ

# ԳՐԵՅՍԻԻ ՈՒ ՋԻՆԻԻ «ԱՆՄԱՏՉԵԼԻ ԱՇԽԱՐՀԸ»

«Կաբանգո պադեմ մանիբադու պիտու»,— ասում է Գրեյսին:

«Դոան նի բադա թենգմաթ»,— պատասխանում է Ջինին:

Այս առանձնահատուկ լեզվով խոսում ու հասկանում են միայն ութամյա Գրեյսի և Վիրջինիա Քենեդիները: Արդեն մեկ տարուց ավելի է, ինչ Գրեյսիի ու Ջինիի գաղտնի աշխարհ թափանցելու բանալին են որոնում Սան-Դիեգոյում գտնվող Կալիֆորնիայի մանկական հիվանդանոցին կից՝ լսողության և խոսակցական լեզվի ուսումնասիրման կենտրոնի աշխատակիցները: Գիտնականները ձգտում են գտնել այդ տարօրինակ հնչյունների իմաստը, քանի որ պարզ դարձավ, որ նրանք, իրոք, իմաստ ունեն: Սակայն ինչու՞ նրանք չսկսեցին անգլերեն խոսել, ինչպես իրենց ծնողները, կամ գերմաներեն՝ ինչպես տատիկը, որի խնամքին էին մնում օրերով:

Կյանքի առաջին տարիներին Գրեյսիի և Ջինիի հաղորդակցման հիմնական միջոցները ժեստերն ու մի քանի անկապ բառերն էին: Նրանք հասկանում էին իրենց ծնողներին, երբ սրանք անգլերեն էին խոսում, բայց իրենք բավարարվում էին միայն մի քանի բառեր արտասանելով: Երբ աղջիկներին մենակ էին թողնում, նրանք, ասես վերակենդանանում էին և անվերջ շաղակրատում: «Երբեք չէինք կարծում, թե նրանց խոսակցությունը հաղորդակցման միջոց կարող լինել, և որ նրանք կարող են իրար հասկանալ»,— ասում է երեխաների մայրը:

Միայն երբ երեխաները դարձան վեց տարեկան, ամուսինները դիմեցին մասնագետների օգնությանը: Գիտնականները շատ արագ պարզեցին, որ աղջիկների խոսքը «երկվորյակների լեզվի» տարատեսակներից մեկն է: Այդ երևույթն առաջանում է, երբ երկվորյակները կամ միևնույն ծնողների տարիքային շատ փոքր տարբերություն ունեցող երեխաները ստեղծում են իրենց սեփական լեզուն:

Ժամանակի ընթացքում Քենեդի երկվորյակները զգալիորեն հարստացրեցին իրենց բառապաշարը և հաջողությամբ են դպրոցում յուրացնում անգլերենի քերականությունը: Նրանք սովորում են զուգահեռ դասարաններում, որի շնորհիվ ավելի շատ են շփվում ուրիշ երեխաների հետ: Գրեյսին ու Ջինին այլ մարդկանց հետ չեն խոսում իրենց լեզվով, և երբ որևէ մեկը փորձում է նրանց կապկել, աղջիկները լռում ու մի կողմ են քաշվում: Կարող է պատահել, որ կանցնի մի քանի տարի և նրանք կպատմեն, թե ինչ էին խոսում իրար հետ:




Այդ ձմեռ ցածրավայրերում բոլորովին ձյուն չկար։ Արտակը գրեթե ամեն օր բարձրանում էր Արա լեռը, վերին լանջերին ձյուն էր գտնում ու սահում փոքրիկ տարածությունների վրա։ Մի երեկո, Նոր տարվա նախօրեին, երբ տուն դարձավ, իմացավ, որ ջուրը սառել է ծորակների մեջ։ Մայրը մոլորել էր։ Նոր տարվա համար հազար ու մի պատրաստություններ է հարկավոր տեսնել, և ջուր չկա։ Մի անգամ էլ էր ջուրն այդպես սառել, և հայրը երկար ժամանակ տաքացնում էր գետնից դուրս ցցված բարակ ու ժանգոտ ջրատար խողովակի ծունկը։ Տակը սոլյարայուղի մեջ թրջած խծուծ էր դրել ու վառել։ Արտակն անմիջապես վազեց ցախանոց ու վերադարձավ մի ձեռքին ինչ-որ հնոտի, մյուսին՝ մուգ գույնի հեղուկով մի բանկա։ Խծուծը խնամքով դրեց խողովակի ծունկ տված մասում և լուցկին կպցրեց։ Սև ծուխն ու մուրը վեր ելան, քարե պատի վրա պատկերելով չոր ճյուղի նման ստվերներ։ Արտակը շուտ-շուտ բացում, փակում էր ծորակը։ Նա շատ էր ուզում, որ հենց այդ պահին վերադառնար հայրը, որպեսզի տեսներ, թե որդին ինչպես է օգնում մորը։ Հանկարծ բացվեց պատշգամբի դուռը և դուրս նայեց Արտակի մայրը.

— Էդ ի՞նչ ես անում,— հարցրեց նա, վախեցած նայելով պատի կեսը բռնած կրակին։

— Ոչինչ, մա, էս է, ջուր կունենաս։

Մայրը լայն ժպտաց, ապա հառաչելով քնքշորեն ասաց.

— Ես քո ցավը տանեմ, Արտակ ջան։

Նրա կողքին անմիջապես հայտնվեցին գզգզված մազերով սևաչվի երկու քույրերը։

Արտակը պահանջեց, որ դուռը փակեն, որպեսզի սև ծուխը ներս չլցվի։ Մայրը անսքող հպարտությամբ ներս քշեց ոտքերի մոտ դեռևս խլվլացող երեխաներին ու դուռը ետևից ծածկեց։ Տղան մոտեցավ ծորակին։ Շոշափեց

ձեռքով։ Կռացավ, փորձեց նայել անցքից ներս։ Մատը մտցրեց, պտտեց մեջը։ Ծորակը մինչև վերջ բացեց։ Շրթունքներով բռնեց նախապես ձեռքով սրբած ծորակի ծայրն ու սկսեց ուժգին ներս քաշել օդը։ Նա այդպես արեց մի քանի անգամ։ Մեկ էլ ծորակից սպիտակ ծխի բարակ շիթ դուրս եկավ՝ ինչպես սիգարեթից։ Արտակն էլի սկսեց ներս քաշել ծորակի օդը։ Հանկարծ ասես մեկը հրեց նրան։ Ծորակից թշշալով տաք գոլորշի ժայթքեց, և ջուրը ընդհատումներով դուրս թափվեց։ Տղան կռացավ, երկու ձեռքով բռնեց դեմքը։ Հետո ուղղվեց, բացեց բերանը ու այլևս վախեցավ փակել, ասես, կրակից նոր հանած կարտոֆիլ էր դրել բերանը։

Աղմուկի վրա մայրն ու երկու քույրերը դուրս վազեցին։ Նրանք չնկատեցին, թե ինչպես, քիչ հեռու կանգնած, Արտակը ցավից ծամածռում է դեմքը։ Ուրախ-ուրախ լցրին դույլերն ու կաթսաները, ասես վախենալով, թե խողովակը նորից կսառչի։

Արտակը առանց դառնալու մոր և քույրերի կողմը, գնաց ցախանոց։ Այնտեղ բերանը ողողեց սառը ջրով, որից ցավն ավելի սաստկացավ։ Նա միայն մի բան էր մտածում՝ տնեցիները չնկատեն պատահածը։ Թե չէ մորն ուրախացնելու համար իր արարքը կորցնում է իմաստը։ Ինչ է որ, այրել է կոկորդը։ Կանցնի կգնա։ Պարզապես հարկավոր է դիմանալ։

Նա գուցե դեռ երկար մնար ցախանոցում, բայց մայրը ձայն տվեց։

Նա գնաց տուն հաստատ որոշած, որ մորից թաքցնելու է բերանի և կոկորդի ցավը։ Հորից լսել էր, որ դատարկ բան է, երբ ասում են, լաց լինես, կհանգստանաս, վիշտդ պատմես՝ կթեթևանաս։ Հայրն ասում էր. «Ցավը պետք է արհամարհես, սպանես քո մեջ»։

Արտակը մորն օգնեց տեղափոխել սեղանը, դեմքը անընդհատ փախցնելով մոր հայացքից։ Մայրը ուշադիր նայեց որդու ծամածռվող դեմքին։

— Ի՞նչ է պատահել, Արտակ ջան։

Արտակն ուզում էր ինչ-որ բան ասել, բայց բառաչի նման մի ձայն արձակեց։

Մայրը տղային անկողին դրեց ու դուրս նետվեց տնից։ Քույրերը լուռ կանգնել էին մահճակալի մոտ, զարմացած նայում էին եղբորը, որին օրը ցերեկով առաջին անգամ էին տեսնում անկողնում։

Շուտով մայրը վերադարձավ գյուղական բժշկի հետ։

— Էդ ոնց ես էդպես անզգույշ եղել։ Մի՞թե կարելի է բերանով ներս քաշել տաք գոլորշին։

Արտակն ապշած նայեց մորը։ Ինքը ոչինչ չէր ասել տաք օդի, գոլորշու մասին։ Մայրը ինչպե՞ս գլխի ընկավ։ Նա բուժակին ամեն բան պատմեց այնպես, ինչպես եղել էր, ասես ինքն իր աչքով էր տեսել։

Բուժակը մորը մի կողմ տարավ և կամացուկ ասաց. «Հարկավոր է տեղափոխել հիվանդանոց։ Եվ վիրաբույժ հրավիրել»։

***

Բժիշկ Իլյա Բաբկենյանը իր երեխաների հետ զարդարում էր տոնածառը։ Ծառն արդեն հեքիաթային տեսք էր ստանում, երբ հնչեց հեռախոսի զանգը։ Տնեցիներից մեկն ասաց. «Էլի՞»։ Մյուսը՝ «Սկսվե՞ց»։ Բժիշկ Բաբկենյանը վերցրեց լսափողը։ Նա ոչինչ չէր խոսում, միայն լսում էր։ Եվ միայն լսափողը ցած դնելուց առաջ կարճ ասաց.

— Գալիս եմ։

— Ի՞նչ է պատահել, հայրիկ,— հարցրեց աղջիկը։

— Եղվարդում մի տղա գոլորշիով այրել է կոկորդը։

— Եվ դու հիմա գնալու ես այնտե՞ղ։

Բաբկենյանը հպարտությամբ իրեն պրոֆեսիոնալ վարորդ էր համարում և լավ գիտեր վարորդների գլխավոր սկզբունքը՝ թող մի քիչ էլ երկար, բայց

լավը լինի ճանապարհը։ Կիրճի ճանապարհը լավերից չէր, բայց բժիշկն այդ ճանապարհն ընտրեց, որովհետև նախատոնական օր էր և երկար կտևեր քաղաքի միջով անցնելը։ Ամեն մի րոպեն թանկ էր։

Առատ ձյուն էր գալիս։ Բաբկենյանը մի քանի անգամ ուժեղ ընթացքի պահին ստուգեց արգելակները։ Համոզվեց, որ ճանապարհը սայթաքուն չէ և մեծացրեց արագությունը, մտածելով գոնե այսպիսի վայրերում մի քանի րոպե շահել։ Նա մեքենան արգելակեց շեշտակի ոլորապտույտի առաջ։ Հանկարծ սոսկալի դղրդոց լսվեց։ Ավտոմեքենան խփվեց ճամփեզրի ժայռին։ Թանձր խավարի մեջ Բաբկենյանի գլխում մի միտք շողաց՝ ինքը ոչ մի րոպե չի կորցրել գիտակցությունը։ Ուրեմն անվնաս է։ Մի բանից էր զարմանում միայն։ Այնպես էր կրծքով սեղմվել ղեկին, որ թվում էր այլևս չի կարողանա պոկվել։ Մի տեսակ նույնիսկ վախենում էր պոկվել։ Չէր փորձում, չէր համարձակվում։ Կարծես թե ցավ էլ չէր զգում։ Բայց նստել է ղեկն ամուր գրկած ու չի շարժվում։ Այս մտքերը նրան համակեցին ընդամենը մի ակնթարթ։ Հաջորդին նա թափով ետ քաշվեց ղեկից ու անմիջապես էլ գոռաց սուր, կտրտող ցավից։ Պարզ է, կրծքավանդակը վնասվել է։ Երկար ջանքեր պահանջվեցին մինչև հաջողվեց բացել ծռմռված դուռն ու դուրս գալ մեքենայից։ Ուղիղ չէր կարողանում կանգնել։ Գնաց դեպի Ջովունիի առկայծող լույսերը։ Ընդամենը երկու-երեք հարյուր մետր։ Բայց նա գիտեր, որ շատ ժամանակ կկորցնի, եթե այդպես կրիայի նման առաջ գնա։ Այնտեղ, ուր լույսեր են երևում, մեծ ճանապարհն է՝ Մայրուղին, և ամեն րոպե մեքենաներ են անցնում։ Միայն թե հասնի այնտեղ։ Սաստկացող ցավից բժիշկն ավելի ու ավելի էր կծկվում և ավելի մեծ դժվարությամբ էր փոխում ոտքերը փխրուն ձյան մեջ։ Ի լրումն այդ



*Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ*

ամեՆի, ձյուՆախառը քամիՆ սկսեց փը֊չել Նրա դեմքիՆ։

Երբ Տասավ մայրուղուՆ, զգաց, որ կորցՆում է գիտակցություւՆը։ ՄեքեՆա֊Ները ավելի շատ դեպի ԵրևաՆ էիՆ գը֊Նում։ Իսկ ՆրաՆ Տակառակ ուղղությամբ էր Տարկավոր, Եղվարդ։ ԿեՆդաՆի՞ է արդյոք տղաՆ։ Այդ միտքը սողոսկելով Նրա ուղեղը, զգաստացրեց բժշկիՆ։ Նա երկու ՏաստատուՆ քայլ աՆելով դեպի ճամփի մեջտեղը, կաՆգ առավ։

ՄեքեՆաՆ արգելակեց երկու-երեք մետրի վրա։ ԿաՆգ առավ ճռՆչյուՆով։ Վարորդը գլուխը դուրս ՏաՆեց ու գո֊ռաց. «Ի՛Նչ է, ախպե՛րս, կյաՆքից ձե՞ռ ես քաշել»։ ԲաբկեՆյաՆը դեռևս կծկված մոտեցավ վարորդիՆ։

— ՄեքեՆաՆ ետ դարձրու, եղբայր,— մի կերպ ասաց բժիշկը։

— Ի՞Նչ եմ կորցրել այՆտեղ, եղ֊բայրս։

— Պետք է։ Չո աՆտեղի չեՆք իրար եղբայր աՆվաՆում։ ԱյՆտեղ, Եղվար֊դում մի երեխա է մաՏաՆում, ես բժիշկ եմ։

— Դե այդպես ասա,— ասաց վա֊րորդը, դուրս եկավ մեքեՆայից ու օգ֊Նեց դեռևս կծկված բժշկիՆ։— Դու իՆքդ Տազիվ ես ոտքի վրա մՆում, բայց կար֊ծես խմած չես։

— ԺամաՆակ մի կորցՆի, եղբայր։

ՄեքեՆաՆ ճարպկորեՆ պտույտ կա֊տարեց սայթաքուՆ ճամփի վրա։ Սլա֊ցավ Եղվարդ։ ԵրևացիՆ Եղվարդի բազ֊մաթիվ լույսերը։ Չեռվում երկու ստվեր երևացիՆ։

— Մեզ կարծես թե դիմավորում եՆ,— ասաց բժիշկը։

ԲաբկեՆյաՆիՆ ձեռքերի վրա տարաՆ ՏիվաՆդաՆոց։ ԸՆդուՆարաՆում լույսի առատություւՆից բոլորՆ սկսեցիՆ կկո֊ցել աչքերը։ ԲժշկիՆ ՆստեցրիՆ թախ֊տիՆ։

— Դե դու գՆա, եղբայրս։ Ծտա֊պիր,— ասաց Նա վարորդիՆ։

— ԿՏասցՆեմ, դեռ ժամաՆակ կա,— ասաց վարորդը՝ ձեռքի մեջ սեղմելով մորթե գլխարկը։

— ԳՆա, շՆորՏակալություՆ։

— ԻՆչ եմ արել որ,— ասաց Նա օգ֊Նելով ՏերթապաՏիՆ ՏաՆելու բժշկի վե֊րարկուՆ։

— ԳոՆե աՆուՆդ ասա,— Տարցրեց ԲաբկեՆյաՆը,— խալաթը ՏագՆելով և գրեթե երեք տակ ծալվելով։

— ԱՆդրաՆիկ։

— Ծտապիր, ԱՆդրաՆիկ։

— Դե՛Տ, լա՛վ կացեք,— ասաց վա֊րորդը շփոթված, ասես իՆչ-որ բաՆում մեղավոր էր։— Ես գՆամ, առողջություՆ եմ ցաՆկաՆում տղայիՆ,— ասաց ու դուրս եկավ։

— ԱմեՆ իՆչ պատրա՞ստ է,— Տարց֊րեց ԲաբկեՆյաՆը, դիմելով ՏերթապաՏ բժշկիՆ ու բուժքրոջը։

— ԱմեՆ իՆչ պատրաստ է, բժիշկ,— ասաց ՏերթապաՏը։— ՄիայՆ Տասկա֊Նալի չէ, թե իՆչպես ես վիրաՏատելու։

— Չեմ թաքցՆում, չեմ կարողաՆում կաՆգՆել։ Ստիպված պետք է լիՆեք պաՏել իՆձ։

ՏղաՆ պառկած էր վիրաՏատմաՆ սեղաՆիՆ, ամբողջապես արդեՆ կապ֊տած։ Նա շՆչում էր բերաՆը բաց, ա֊րագ-արագ, երբեմՆ՝ խռպոտ։

— Ծա՞տ է ցավում,— Տարցրեց ԲաբկեՆյաՆը, կռաՆալով ուղիղ ՏիվաՆ֊դի դեմքի վրա։ ԵտևիՑ ՆրաՆ բռՆած պաՏում էր ՏերթապաՏ բժիշկը։

— Դատարկ բաՆ է,— Տազիվ շար֊ժելով շրթուՆքՆերը, ասաց Արտակը։

— Նա էդպես է, բժիշկ,— ասաց բուժքույրը։— Իմ զարմիկՆ է։ Ես ՆրաՆ լավ եմ ճաՆաչում։

— ՍկսեՆք։

Երբ ԲաբկեՆյաՆը, ՏերթապաՏ բժշկի և բուժքրոջ ուղեկցությամբ դուրս եկավ վիրաՏատարաՆից, տեսավ լայՆալաՆջ մի տղամարդու, սև խիտ բեղերով և ճերմակող գլխով։

— Ո՞նց է տղաս, բժիշկ:

— Ամեն ինչ լավ է, միայն այդպես առանց խալաթի չի կարելի այստեղ մտնել:

Բաբկենյանը կծկոտվելով հագնվում էր:

— Դուք շատ վատ եք զգում, բըժիշկ,— ասաց Արտակի հայրը,— ես ձեզ ոչ մի տեղ չեմ թողնի գնաք:

— Պիտի գնամ: Բոլոր նշանակումները արված են: Մի հուզվեք:

— Բժիշկ Բաբկենյան,— ասաց հերթապահ բժիշկը,— ես ինքս ձեզ բաց չեմ թողնի: Այդ վիճակում հիվանդանոց պետք է գնալ, և ոչ թե հիվանդանոցից դուրս գալ: Ես իրավունք չունեմ...

— Դատարկ բան է,— ժպտալով պատասխանեց բժիշկը, ձայնը նմանեցնելով Արտակի ձայնին: Բոլորը ծիծաղեցին: Տղայի հայրն էլ ծիծաղեց, թեև ոչինչ չհասկացավ:

— Ես հիմա մեքենա կճարեմ,— առաջարկեց նա:

— Օգնեք ինձ ոտքի կանգնել,— ասաց Բաբկենյանը: Դռների մեջ հայտնըվեց Արտակի մայրը: Հենվելով նա մտնեցավ բժշկին: Վախեցած կանգ առավ, տեսնելով թե ինչպես են բերում նրան:

Միջանցքում տղաներ ու աղջիկներ էին կանգնած: Արտակենց ամբողջ դասարանը: Նրանք լուռ էին, ոչ մանկականորեն լուրջ: Քիչ հեռվում կանգնած էին հիվանդները: Բժշկին դուրս բերեցին թևերից բռնած: Նա մի կերպ քարշ էր տալիս ոտքերը: Ելքի մոտ կանգնած էր բժշկին բերած վարորդը: Նա շտապեց Բաբկենյանին օգնելու:

— Անդրանի՞կ,— ոչ բարձր ասաց Բաբկենյանը:

— Գնացինք, եղբայրս:




# ԽԼՈՒԹՅՈՒՆ Է ՍՊԱՌՆՈՒՄ

Վերջերս Լիդսի պոլիտեխնիկական ինստիտուտում ավարտվեցին «Լսողությունը և ժամանակակից երաժշտությունը» պրոբլեմի ուսումնասիրությունը:

Գիտնականների արած հետևությունները չափազանց անմխիթար են:

Պարզվում է, որ դիսկոտեկների և պոպ-երաժշտության համերգների յուրաքանչյուր չորս հազար երիտասարդ հաճախորդներից մեկը խլության է դատապարտված:

Պարահրապարակներում ու համերգներում, որ այնքան սիրում են դեռահասները, հաճախ տեղադրվում են մինչև 5 հազար վատտ հզորության ուժեղացուցիչներ, որոնցից դուրս եկող ձայնը մշտապես անցնում է 97 դեցիբելից, երբեմն էլ հասնելով մինչև 120 դեցիբելի:

Բժիշկները պարզել են, որ նման աղմուկը անխուսափելիորեն նվազեցնում է սովորական ձայները (1—3 կիլոհերց) ընկալելու ականջի ունակությունը: Նման երաժշտամոլների լսողությունը նվազում է 30 դեցիբելով, և ընդ որում, ձայնային սպեկտրի հենց այն մասում, որով մենք ընկալում ենք մարդկանց սովորական խոսքը:

Գիտնականները խորհուրդ են տալիս դպրոցներում աշակերտներին բացատրել նման «երաժշտական» աղմուկի վտանգավորությունը: Բացի այդ առաջարկում են դիսկոտեկներում միջին ձայնի առավելագույն աստիճան սահմանել՝ 102—105 դեցիբել: Եվ, վերջապես, անհրաժեշտ է պարահրապարակներում բարձրախոսները այնպես տեղադրել, որ նրանք ուղիղ այցելուների ականջի մեջ «չգոռան»: Այդպես ականջները մեկընդմիշտ կըմբոստանան:

# ԺՊԻՏՆԵՐ

— Անպիտան տղա, այսօր ձեր դասղեկը կրկին զանգատվեց: Ի՞նչ ես արել դպրոցում:

— Ոչինչ, մայրիկ: Այսօր ես դպրոց չեմ գնացել:

— Հայրիկ, դու կարո՞ղ ես փակ աչքերով ստորագրել:

— Այո...

— Այդ դեպքում փակիր աչքերդ և ստորագրիր,— ասաց տղան «2»-ներով լի օրագիրը հոր առաջ դնելով:

Ուսուցիչն աշակերտին հարցրեց.

— Ես քեզ տվեցի երեք ճագար, հետո ավելացրի չորսը, ընդամենը քանի՞ ճագար եղավ, Պետիկ:

— Տասներկու,— պատասխանեց Պետիկը:

— Այդ ինչպե՞ս:

— Յոթը դուք տվեցիք, հինգն էլ ես տանը ունեմ:

— Ի՞նչ է վերացական գոյականը,— հարցրեց ուսուցիչը աշակերտին:

— Չգիտեմ,— պատասխանեց նա:

— Դե լսիր: Վերացական գոյականն այն է, ինչին չի կարելի ձեռք տալ, բայց կարելի է նրա մասին մտածել: Դե, հիմա մի օրինակ բեր,— ասաց ուսուցիչը:

— Օրինակ... օրինակ շիկացած երկաթը...

Ուսուցչուհին Անահիտին հարցրեց.

— Ինչո՞ւ նկարչության համար տված հանձնարարությունը հայրդ է կատարել:

— Որովհետև մայրս նկարել չգիտի,— արդարացավ Անահիտը:

Մի տղա հեռախոսով դպրոց զանգահարեց:

— Ալո, այսօր տղաս դպրոց չի գալու, հիվանդ է, տանում ենք հիվանդանոց:

— Ներեցեք, ո՞վ է խոսողը,— աշակերտի ձայնը ճանաչելով հարցրեց դիրեկտորը:

— Հայրիկս է խոսում...

— Դպրոցում բավականին առաջադիմել ես, չէ՞:

— Այո, առաջ են տարել, հիմա պատուհանի մոտ եմ նստում:

*Հավաքեց ՀԵՂՈՒՇ ԹՈՒՄԱՆՅԱՆԸ*

*ԱՐԱՄ ՀԱԿՈԲՅԱՆ*

# ԵՍ ԱՌՎԱԿՆ ԵՄ

Ես առվակն եմ,
Ես առվակն եմ,
Աղբյուրի ջինջ
Աղաղակն եմ:
Թելի նման
Ձգվում երկար,
Երգ ու վազքով
Գնու՜մ, գնու՜մ,
Համբուրում եմ
Ափերս ես,
Եվ զուգում եմ
Նրանց պես-պես՝
Կարմիր-կապույտ
Դեղին, պուտ-պուտ:
Կանաչում է
Հողն իմ կանչից,
Ու ծաղկում է
Իմ կարկաչից:
Ես առվակն եմ,
Ես առվակն եմ,
Աղբյուրի ջինջ
Աղաղակն եմ:

# ՁՅԱՆ ՓԱԹԻԼՆԵՐ

Նկարել է ծառ ու ծաղիկ,
Նկարել է փողոց ու բակ,
Եվ ամենուր՝ ծառին, ծաղկին,
Ձյան փաթիլներ ճերմակ-ճերմակ...
Մայրը ասաց,— Ինչու՞ Արմեն
Ձյան փաթիլներ նկարեցիր,
Երբ արև է, ամառ է տաք,
Թիթեռնիկն է շուրջդ խաղում,
Փոքրիկները ուրախ, անհոգ,
Ծաղիկներ են դաշտում քաղում:
— Շոգել էի մայրիկ ջան ես,
Այդ պատճառով էլ ամենուր
Ծառին, ծաղկին, կտուրին մեր,
Նկարեցի ձյան փաթիլներ...







*ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ*

# ԱՅԾԸ ՀԻՄԱՐ, ՔԱՋ ԷՐ ՆԱԵՎ

Հեռացել էր այծն իր հոտից,
Իր տիրոջից, իր արոտից:
Հովիվն ուներ սաստող մահակ,
Հոտը ուներ շներ, պահակ:
Ապահով էր կյանքը այծի



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Բ[illegible] սա այպ լեռանն այցի,
Ազատ կանգնեց լեռան վրա,
Երազանքը սա էր նրա:
— Լավ է,— ասավ,— արևին մոտ,
Էլ ինչ հովիվ կամ էլ ինչ հոտ,
Օդը մաքուր, երկինքը բաց,
Ինչ կա ցածում, հողին կպած...
Այսպես մնաց ժայռի ծերին,
Մոռացած այծ ընկերներին:
Հիշեց միայն հովիվ ու հոտ
Երբ քաղց զգաց... ու չկար խոտ:
Ծարավ զգաց՝ չկար աղբյուր,
Չկար թեկուզ և մի պուտ ջուր:
Նոր հասկացավ ինչ է արել...
Այն է՝ ուզեց նա ցած իջնել,
Գայլը ցնծաց.— Արի՛, արի՛,
Ժայռի վրա ինչ խոտ ու ջուր,
Իջի՛ր, իջի՛ր, արի՛, արի՛,
Այստեղ է ջուրն ու խոտն անուշ,
Ով պատվական, իջիր զգույշ,
Գայլիս չարկամ դու չկարծես,
Իջիր հանգիստ, ոտք չքերծես:
—Թող որ մնամ այս վերևում,
Քարաժայռին ընկերացած,
Քան թե գայլիդ գամ դառնամ կեր,—
Այծը հիմար էր, բայց և քաջ,
Ելավ, կանգնեց երկնի առաջ,
Ցից պոզերը խրեց ամպին

Ու քարացավ երկնի ճամփին:

# Արամ Խաչատրյանը
# իմ հուշերում



Ե րաժշտական շրջաններում հաճախ հոլովվում էր նրա անունը, որպես Մոսկվայի կոնսերվատորիայի այդ տարվա շրջանավարտների մեջ լավագույնի: Նրա անունը ոսկեզօծ տառերով գրվեց Մոսկվայի կոնսերվատորիայի մարմարյա պատվո տախտակին, Տանեևի, Ռախմանինովի, Գլիերի և ուրիշ հայտնի անունների կողքին: Նրա դիպլոմային աշխատանքը իր հրաշալի առաջին սիմֆոնիան էր, որը նա նվիրել է Սովետական Հայաստանին:

Եվ ահա մեկ էլ իմանում ենք, որ նա Երևան է եկել: Երևանի կոնսերվատորիայի արհկոմը, որի անդամն էի ես, հանձնարարեց ինձ նրա հետ ստեղծագործական հանդիպում կազմակերպել:

1934 թվի հունիսն էր: Մեր կոնսերվատորիան գտնվում էր Սպանդարյանի և Տերյանի անկյունում: Մեծ նորոգումից հետո այդ շենքը մի հարկ ևս բարձրացել էր և հիմա ունեինք համերգային դահլիճ՝ իր բեմահարթակով, որի վրա դրված զույգ դաշնամուրներից մեկը սպիտակ էր, բրոնզե զարդանախշերով: Նոր էր ստացվել, միակն էր Երևանում, որով մեր կոնսերվատորիան պարծենում էր:

Կուլտուրայի տանը կայացած համերգի ընդմիջմանը, քաշվելով ու հուզվելով մոտեցա երիտասարդ Արամ Խաչատրյանին, ներկայացա կոնսերվատորիայի արհկոմի անունից, հայտնեցի մեր խնդրանքը՝ հանդիպում ունենալ կոնսերվատորիայի ուսանողության հետ: Նա սիրով համաձայնեց: Ինձ թե զարմացրեց և թե ուրախացրեց նրա պարզ ու անմիջական վերաբերմունքը:

Նշանակված օրը, ցերեկվա ժամը 12-ին, կոնսերվատորիայի դահլիճը լեցուն էր դասատուներով և ուսանողներով: Պայմանավորված ժամին ներս մտավ Արամ Խաչատրյանը, բարևեց և արագ, եռանդուն քայլերով, ծափահարությունների ներքո, բարձրացավ բեմահարթակ: Երբ լռություն հաստատվեց, ժպտալով դիմեց դահլիճին.

— Ասացեք խնդրեմ, ինչի՞ց սկսենք մեր խոսակցությունը, ի՞նչ է ձեզ հետաքրքրում:

Դահլիճում շշուկներ բարձրացան, սակայն համարձակներ չգտնվեցին, հարցեր չեղան, տիրեց լռություն: Եվ Արամ Խաչատրյանը ինքը սկսեց խոսել, պատմեց, որ Երևան է եկել «Պեպո» կինոնկարի երաժշտությունը գրելու, որը նկարահանում է կինոռեժիսոր Համո Բեկնազարյանը: Պատմեց, թե ինչպես է աշխատում, ինչ նպատակ է դրել իր առաջ, ապա անսպասելի մոտեցավ սպիտակ դաշնամուրին ու նվագեց որոշ կտորներ այդ նկարի համար գրած երաժշտությունից ու վերջացրեց «Զոկնորսի երգով», ասաց, որ երգի տեքստը գրել է Եղիշե Չարենցը: «Դամբը ձեռքիս ջուրն եմ մտնում»-ը երգեց հաճելի ձայնով, սրտանց և հուզված:

Այնքան դուր եկավ, որ խնդրեցինք կրկնել: Այդ սքանչելի երաժշտությունը վերացրեց մեր սկզբնական կաշկանդվածությունը: Տեղացին հարցերը, որոնց նա պատասխանում էր սիրով, առանց շտապելու: Ասաց որ միայն 19 տարեկան հասակից է սկսել լուրջ զբաղվել երաժշտությամբ, Մոսկվայի Գնեսինների անվան երաժշտական տեխնիկումում, ավարտելով թավջութակի և կոմպոզիցիայի դասարանները: Երկու տարի զուգահեռաբար սովորել է Մոսկվայի համալսարանի կենսաբանական ֆակուլտետում: Բայց երաժշտությունը աստիճանաբար կենսաբանությանը նրա կյանքից դուրս է մղել: Թողնելով համալսարանը, նա նվիրվել է ստեղծագործությանը՝ պրոֆեսոր Մ. Գնեսինի ղեկավարությամբ: 1929 թվին ընդունվել է Մոսկվայի կոնսերվատորիա, պրոֆ. Ն. Մյասկովսկու դասարանը: Պատմեց, որ մանկությունը անց է կացրել Թիֆլիսում, շարունակ լսել հայկական, վրացական ու ադրբեջանական ժողովրդական երաժշտություն, երգեր ու պարեր, լռությամբ նվագել է տարբեր ժողովրդական գործիքների վրա, իսկ տանն իրենց հին դաշնամուրի վրա ժամերով իմպրովիզացիաներ է արել իր լսած մեղեդիների մոտիվներով:

Նա խոսում էր բարձր տրամադրությամբ, ոգեշնչված, ժպտադեմ, անսպասելի սրամտություններով ծիծաղ, աշխուժություն առաջացնելով, մթնոլորտը դարձնելով ջերմ, մտերիմ:

Վերջում դասատուները և ուսանողները շրջապատեցին նրան և երկար շարունակեցին զրույցը: Նկատելով, որ արդեն հոգնած է, պարտքս համարեցի մոտենալ, հյուրանոց ուղեկցելու առաջարկ անել: Ճանապարհին շարունակեցինք զրույցը: Նա հետաքրքրվում էր մեր կոնսերվատորիայի և մեր մայրաքաղաքի երաժշտական կյանքով: Փողոցի անկյունում մեկ էլ կանգնեց ու հարցրեց.

— Այստեղ որտե՞ղ կարելի է ճաշել:

Ես մի պահ շփոթվեցի, հետո իսկույն հիշեցի, որ ըստ պատմածների, նախկին մզկիթի բակում (հիմա այնտեղ պլանետարիան է և Երևանի պատմության թանգարանը), չինարի ծառերի խիտ ստվերների տակ, շատրվաններով լի զով ջրավազանի մոտ, քաղաքի շոգ ժամերին գալիս են, սեղանների շուրջը զրույցի նստում ու միաժամանակ հայկական անուշահամ խորտիկներ ճաշակում քաղաքի երևելի մարդիկ՝ ճանաչված գրողներ, դերասաններ, արվեստագետներ, գիտնականներ:

Առաջնորդեցի նրան մզկիթի բակը: Նա հրավիրեց ինձ միասին ճաշելու: Այն ժամանակ ընդունված չէր, որ երիտասարդ աղջիկը ճաշի դրսում: Այդպես ասել նրան հարմար չգտա, պատճառաբանեցի, որ առավոտվանից տանը չեմ եղել, մայրիկս կանհանգստանա ու հրաժեշտ տվի:

Մի քանի տարի անց, երբ ես արդեն Մոսկվայի կոնսերվատորիայի ուսանող էի, մի առիթով հայտնի դաշնակահար, կոնսերվատորիայի պրոֆեսոր Կ. Իգումնովը, խոսելով Արամ Խաչատրյանի դաշնամուրային ստեղծագործությունների մասին, նշեց, որ նա ի բնե օժտված է դաշնամուրային բարձր տեխնիկայով, ձեռքի լավ դրվածքով ու լավ է նվագում, թեև հատուկ չի սովորել: Դրանում ես մեկ անգամ ևս համոզվեցի, երբ խնդրեցի Արամ Իլյիչին լսել իր «Պոեմ»-ի իմ կատարումը՝ բաց համերգում ելույթ ունենալուցս առաջ:

Նա ուշադրությամբ լսեց, արեց իր դիտողությունները, ապա անսպասելի նստեց դաշնամուրի առաջ ու սկզբից մինչև վերջ նվագեց նույն դաշնամուրային «Պոեմը»՝ ցուցադրելով դաշնակահարի կատարյալ տեխնիկա, բարձրարվեստ հնչեղայնություն: Այդ կատարումը ինձ թե մեծ բավականություն պատճառեց, թե շատ օգտակար եղավ:

1938 թվի մայիսին կոնսերվատորիայի փոքր դահլիճում պետք է մասնակցեի ուսանողական բաց համերգին՝ կատարելով Արամ Խաչատրյանի դաշնամուրային կոնցերտի 2-րդ մասը: Այդ համերգում առաջին անգամ կոնցերտի 2-րդ մասը նվագախմբի փոխարեն պետք է կատարվեր երկրորդ դաշնամուրի նվագակցությամբ: Ուստի հեղինակին հետաքրքրում էր հեռվից լսել, թե ինչպե՞ս է հնչում, և ներկա եղավ նախահամերգային մեր փորձին:

Երբ իմ նվագն ավարտելով, բեմահարթակից իջա, բավականին հուզված էի, Արամ Խաչատրյանը ցածր ձայնով հայտնեց ինձ իր դրական կարծիքը, արեց նաև դիտողություններ, ասաց, որ կաշխատի գալ համերգին և շարունակեց լսել հաջորդին: Փոքր ինչ խաղաղվելուց հետո, նկատեցի, որ կողքիս աթոռին դրած թղթապանակս չկա: Անհանգստացա, մեջը կային նաև գրադարանային նոտաներ: Իսկ կողքիս աթոռին այժմ շատ լուրջ նստած էր Արամ Խաչատրյանը և ունկնդրում էր կատարողներին: Ստիպված եղա ամաչելով դիմել նրան.

— Արդյոք չե՞ք տեսել թղթապանակս:

Նա շատ չոր, թե՝ «ո՛չ»:

Այնքան էի հուզվել, որ չէի կարողանում այլևս լսել նվագողներին: Մեկ էլ Արամ Խաչատրյանը վեր կացավ, իր տակից հանեց իմ թղթապանակը և մեկնեց ինձ: Երկուսս էլ ծիծաղեցինք: Գիտեի, որ նա սիրում էր կատակել, բայց այդպես, այն էլ փորձի ժամանակ, չէի սպասում:

Հետագայում, տասնյակ տարիներ, զանազան համերգներում հանդիպելիս, նա առիթ լինելիս, երբ ինձ ներկայացնում էր ուրիշներին, չէր մոռանում հիշատակել, որ առաջին անգամ ես եմ կատարել իր դաշնամուրային կոնցերտի 2-րդ մասը՝ երկրորդ դաշնամուրի նվագակցությամբ:

1940 թվականի ուսումնական տարին նոր էր սկսվել: Կոնսերվատորիայի վերելակի մոտ հանդիպելով, բարևեցի և ուզում էի հեռանալ, նա ինձ կանգնեցրեց և սկանչիս շշնջաց. «Վաղը ժամը 2-ին, պրոֆեսոր Հ. Նեյհաուզի դասարանում, դաշնամուրի նվագակցությամբ, պրոֆեսուրայի համար առաջին անգամ, կատարվելու է իմ ջութակի կոնցերտը, եթե ուզում ես, ե՛կ»:

Հաջորդ օրը ժամանակից էլ վաղ մտա № 29 դասարանը և տեղ գրավեցի մի անկյունում: Շուտով մեծ դասարանը նեղ թվաց: Հավաքվեցին պրոֆեսոր-ներ, դասատուներ, հիմնականում լա-րային ֆակուլտետից: Ահա և եկան Դավիդ Օյստրախը, կոնցերտմեյստերը և ինքը՝ Արամ Խաչատրյանը: Բոլոր խոսակցությունները դադարեցին. մեծ, լուսավոր դասարանում տիրեց լռու-թյուն: Փոքր անց, առաջին իսկ հըն-չյունները կախարդեցին մեզ: Դավիդ Օյստրախը՝ անվանի ջութակահարը, այսօր նվագում էր առանձնակի ներ-շնչանքով: Իսկ երբ հնչեց 3-րդ մասը՝ իր հայկական ժողովրդական հրաշալի, ճկուն, ուրախ, առնական ոգով, հըրճ-վանքն ու հիացումը ողողեցին ունկըն-դիրների դեմքերը: Ամբողջ աշխարհում արդեն հայտնի, մանավանդ իր «Սու-սերով պար»-ով, կոմպոզիտորը նստած դաշնամուրի մոտ թերթում էր նոտա-ները, ուշադիր հետևում մենակատա-րին: Նա հուզված էր, թեև ունկնդիր-ների հայացքներում արդեն կարդում էր իր նոր ստեղծագործության գնահա-տականը:

Այդ օրն իսկապես երաժշտական մեծ տոն էր, բացառիկ տաղանդավոր ջու-թակի կոնցերտի ծննդյան առթիվ:

Երկու ամիս անց, նոյեմբերի 16-ին, Չայկովսկու անվան համերգային դահ-լիճում, սիմֆոնիկ նվագախմբի նվա-գակցությամբ, Դավիդ Օյստրախի կա-տարմամբ կայացավ ջութակի կոնցեր-տի պրեմիերան:

Արամ Խաչատրյանի ջութակի կոն-ցերտը հնչում էր իբրև հիմն կյանքի հաղթության, գեղեցկության և երջան-կության:

Դահլիճը թնդում էր ծափահարու-թյուններից, անհամար անգամ բեմ էին հրավիրում կատարողներին և կոմպո-զիտորին:

Այնուհետև, անցած քառասուն տա-րիների ընթացքում ներկա եմ եղել նրա համարյա բոլոր հեղինակային համերգ-ներին: Սկսած 1951 թվից Արամ Խա-չատրյանը հաճախ էր գալիս որպես դիրիժոր, առավել ևս ուժեղացնելով իր ստեղծագործությունների ազդեցությու-նը ունկնդիրների վրա:

1976 թ. սեպտեմբերի 17-ին հյուրա-խաղերով Մոսկվայում էր գտնվում Ա. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի թատրոնը: Կրեմլի համագու-մարների պալատում նա ներկայացրեց «Գայանե» բալետը: Ինչպես միշտ, այդ հսկա դահլիճում ազատ տեղ չկար: Դեռ առաջին գործողության ընթացքում ո-րոշ համարներ ընդունվում էին ծափա-հարություններով: Ընդմիջման ժամա-նակ ամուսնուս հետ մոտեցանք Արամ Խաչատրյանին, ողջունեցինք ու կրկին անգամ հայտնեցինք մեր հիացմունքը: Նա հիշեց, որ եղել էինք նախորդ ներ-կայացմանը նույնպես, և կարծես ամա-չելով ասաց.

— Չե՞ք ափսոսում ձեր ժամանակը, երկու անգամ իրար հետևից դիտում եք «Գայանեն»:

— Այդպիսի երաժշտությունը կարե-լի է լսել անվերջ, ամենայն օր, միշտ,— ասացինք մենք: Նա առավ ձեռքիցս ներկայացման ծրագիրը, գրպանից հա-նեց գրիչը և գրեց.

«Սիրելի Ցողիկ: Անչափ շնորհակալ եմ քեզնից», ստորագրեց՝ «Արամ Խա-չատրյան» ու տվեց ինձ:

Ես անչափ զգացված էի: Երբ մենք հեռացանք, Արամ Խաչատրյանի մոտ արդեն հերթ էր գոյացել ինքնագիր առ-նելու համար:

Այդ օրը Արամ Խաչատրյանի տեսքը լավ էր, թեպետ նոր էր հիվանդանոն-ցից դուրս գրվել. ինչպես միշտ՝ կեն-սուրախ էր, կատակում էր, ծիծաղեց-նում:

Համերգն ավարտվեց: Խելահեղ ծա-փահարություններ... դահլիճը ոտքի է կանգնում, հայացքով փնտրում է Արամ Խաչատրյանին: Ահա և նա, դանդաղ իջնում է օթյակից... վերջապես հայտ-նըվում դիրիժորի կողքին, սեղմում է նրա ձեռքը, դառնում ինքն էլ ծափա-հարում հանդիսատեսներին: Դահլիճը չի խաղաղվում, պայթում է որոտալից ծափերից: Իսկ նա, այս հաղթահանդե-սի «մեղավորը» կանգնած դիրիժորի մոտ, հուզմունքից շառագունած, գուցե քիչ էլ շփոթված, ժպիտը երեսին, ըն-դունում է իր փառքը...

ՑՈՂԻԿ ԱՓՐԵՍՅԱՆ
*դաշնակահարուհի*

Տղան արթնացավ կեսգիշերին այն զգացումից, թե մեկը քայլում է տան շուրջը, ցնցում լուսամուտի խարխուլ փեղկերը, իրարով տալիս տանիք նետած երկաթե ժանգոտած թիթեղները, քաշում դուռը, փորձում ներս թափանցել։ «Պապի՛կ»,— շշնջաց տղան, բայց հենց նույն պահին էլ հիշեց, որ պապը կողքին չէ. նա մենակ էր այդ տխուր, փոշոտ ապակիներով հսկայական տանը։ Տղան ծածկոցը քաշեց գլխին, բայց վախը չանցավ, դեռ հակառակը, նրան թվաց, թե ինչ-որ մեկը բացել է դուռն ու այժմ տան հեռավոր անկյունից մոտենում է այն սենյակին, որտեղ ինքն է։ Տղան թռավ ոտքի, սակայն չիմանալով, որ կողմ փախչել՝ դռա՞ն, թե՞ լուսամուտի, սկսեց պտտվել սենյակում, քաշեց թուլացած կեռիկից և հայտնվեց շեմին։



Աշնանային քամին օրորում էր ծառերը, գետնին շաղ էր տվել չոր խոտ, իսկ բարձրացող փոշին կարծես հեռավոր հրդեհների մոխիր լիներ։ Տղան նստեց սանդուղքի վերին աստիճանին, թիկունքում զգալով դատարկ սենյակների ահավոր լռությունը։ «Պապի՛կ, պապի՛կ»,— ծնկները գրկելով, գունդուկծիկ, նորից շշնջաց նա։

Լուսադեմին պապը գնաց սայլակի նմանվող փոքրիկ վագոնիկով։ Շրջվելով տղայի կողմը, բղավեց, թե կվերադառնա մինչև արևամուտ։ Հետո այլևս ոչինչ չբղավեց, միայն ետ էր նայում, և նրա սպիտակ մորուքը սև խալաթի ֆոնի վրա կարծես սպիտակ վզկապ լիներ, ինչպիսին կինոներում կրում են անվախ կովբոյները։

Տղան ապրում էր քաղաքում։ Մեկ շաբաթ առաջ մայրը նրան իջեցրեց տափաստանային այս կիսակայարանում, որտեղով անցնող գնացքներից միայն մեկն էր կանգնում, այն էլ մեկ րոպեով։ Տղան պապին նկատել էր դեռ հեռվից. նա կանգնած էր միայնակ։ Երբ տղան աստիճաններից թռավ ճռճռացող խճի վրա, մայրը հեծկլտաց ու նրան մեկնեց փոքրիկ ճամպրուկը, իսկ գնացքն արդեն շարժվում էր, և տղան շրջվելով տեսավ միայն վագոն-ռեստորանի սպիտակ վարագույրները, որտեղ մայրն աշխատում էր որպես բուֆետապան։ Դղրդալով անցավ վերջին վագոնը, և նրանք պապի հետ մնացին երկուսով, անծայրածիր տափաստանում։

Պապը կավի հանքերի պահակն էր, սակայն հանքերում արդեն վաղուց ոչ մի աշխատանք չէր տարվում և բանվորների համար շինված փայտե բարաքը դատարկ էր մնացել։ Մեկ շաբաթվա ընթացքում ոչ մի կենդանի էակ չէր մոտեցել բարաքին և, գուցե պապն էլ չգիտեր, թե ումից էր պահպանում կավահանքն ու դատարկ բարաքը։

Թեթևակի քայլերի ձայն առնելով, տղան վեր թռավ, բայց նույն պահին էլ նրա սիրտը ջղաձգորեն սեղմվեց, երբ տեսավ կենդանու փրչոտ գլուխը։ Տաք շնչառությունը հասավ նրա այտին, հոտից հասկացավ, որ դա շուն է և հուզմունքի պոռթկումից գրկեց շանը, սեղմեց կրծքին ու լաց եղավ։ Շունը լիզեց նրա կզակը, հետո մեղմորեն ազատվեց նրանից, բարձրացավ երկու աստիճան ու նստեց տղայի կողքին։ Տղան նորից գրկեց նրան, այս անգամ զգալով, որ շունն էլ է դողում, միաժամանակ զարմացավ, թե գիշերով նա որտեղից հայտնվեց։ Հավանաբար հեռվից

# Գիշերը

ՖՅՈԴՈՐ ԿԱՄԱԼՈՎ

էր եկել, երևի հոգնած էր: Տղան մտածեց, որ շունը քաղցած կլինի, բայց հացը հենց այն սենյակում էր, որտեղ նա քայլերի ձայն էր առել: «Գնանք,— դուռը բացելով ասաց տղան,— ես քեզ հաց կտամ»: Դուռը ծանր ճռռաց, բայց շունը չմտավ ներս: Առանց շան տղան էլ չհամարձակվեց ներս մտնել և դուռը փակելով նորից նստեց աստիճանին:

Շունը շարունակում էր մնալ նրա կողքին, բայց հայացքը ուղղված էր դեպի գիշերը, և տղան վախեցավ, որ շունը կգնա և իրեն մենակ կթողնի: Շանը իր մոտ պահելու համար, ցածրաձայն զրույցի բռնվեց հետը: «Մայրս գնացքի բուֆետապանն է,— ասաց,— և անընդհատ ուղևորությունների մեջ է, ինձ էլ վերցնում է իր հետ: Գիտե՞ս, քանի կայարան եմ տեսել, թիվն էլ եմ մոռացել»:

Շունը թեթևակի շարժեց պոչը, չգիտես խրախուսում էր նրա պատմածը, թե ակնարկում, որ իր գնալու ժամանակն է:

«Է-է,— շտապեց ասել տղան:— Մենք ուղտ էլ ունենք: Պապիկինս է: Գնանք, ես քեզ ցույց կտամ, գիտե՞ս ինչ բարձրահասակն է»: Դողալով ու կծկվելով նա իջավ շեմից և անցավ տան ետևը, որտեղ երկաթի ցցից կապված, պառկած էր ծեր ուղտը:

Տան ետնամասում քամին ավելի ուժգին էր, ավելի թափանցող, և տաքանալու համար տղան տեղավորվեց բրդոտ սապատների արանքում:

«Արի ինձ մոտ»,— կանչեց նա շանը, շունը նվնվաց ու մի կողմ քաշվեց: «Կարող է հեռանալ»,— վախեցավ տղան և արդեն պատրաստվում էր իջնել ուղտի ընդարձակ մեջքից, երբ գիշերը օրորվեց նրա առջև, ուղտը կանգնեց ոտքերի վրա և տղան հանկարծ հայտնըվեց աստղերի մեջ, և սառը աստղերը շողշողացին նրա աչքերի դեմ: Ներքևում երկիրն էր՝ այնտեղից լավում էր շան վախեցած վնգստոցը: Նրա կաղկանձյունը տղային կանչում էր ներքև, սակայն տղան նրան արդեն չէր տեսնում:

Շունը հաչելով փորձեց կանգնեցնել ուղտին, նա նույնիսկ ատամներով բռնեց պարանը, որի ծայրին գետնից դուրս քաշած ցիցն էր, փորձեց ոտքերով կռթնել գետնին, միաժամանակ քաշել



ՆԿ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

պարանը, բայց ուղտը վեհորեն գնում էր առաջ, ուշադրություն չդարձնելով շան վրա: Եվ տղան նրա մեջքին նըստած օրորվում էր գիշերվա մեջ, չպատկանելով երկրին, սակայն չպատկանելով նաև երկնքին: Փշրված գավաթի բեկորների էին նման աստղերը, որոնք լողում էին նրան ընդառաջ: Քանի-քանի անգամ էր նա օգնել մորը փշրված գավաթի կտորտանքը հատակից հավաքելու: Երբեմն մի որևէ հարբած ուղևոր գավաթը դիտավորյալ նետում էր հատակին և սարսափելի հայհոյանքներ տեղում: Տղան կուչ էր գալիս, մորն էր տալիս ավելն ու բահիկը, իսկ գիշերը, գնացքի անիվների ձայնի տակ մտածում էր այն մասին, թե կգա ժամանակ, երբ ինքն ու մայրը կգնան մի այնպիսի տեղ, ուր երկաթգիծ չի լինի: Թող լինի միայն ամենասովորական միջգյուղյա մի ճանապարհ, եզրերին ծառեր ու թփեր, մայրիկը կդադարի դրամ հաշվել ու բաժանել առանձին-առանձին կապերի: Տղան գիտեր, որ դա թեև դժվարությամբ ձեռք բերած, բայց անազնիվ դրամ էր: Երբ դրանք մայրիկի ձեռքում էին, նրա դեմքը դառնում էր օտար, անբարյացկամ, լարված:

Քամին հանդարտվեց, լսվում էր միայն ուղտի համաչափ քայլերի ձայնը: Գիշերվա միջով ուղտը լողում էր քամու բերանն ընկած առագաստա-

նավի նման, իսկ պարանից կախված ցիցը գալիս էր ուղտի ետևից ու կարծես տեղահան եղած խարիսխ լիներ: Սակայն տղան իրեն նավապետ չէր զգում. նավապետները գիտեն, ուր են վարում իրենց նավերը, իսկ տղան չգիտեր, միայն տեսնում էր, որ ուղտն ուղղըվում էր դեպի լուսավոր եզրագծով շրջապատված սև բլուրը: Բլրի ետևից դուրս էր լողում հսկայական լուսինը: Տղան հանկարծ վախեցավ, որ ուղտը, իրեն առած, կմտնի այդ հսկայական նարնջագույն շրջանակի մեջ:

Տղան իր մերկ կրունկները ավելի ուժեղ սեղմեց ուղտի տաք կողերին և կկոցեց աչքերը, սակայն տափաստանյան քամին մնում էր սառը, իսկ ուղտի քայլերը՝ համաչափ:

Երբ նա նորից բացեց աչքերը, լուսինն արդեն մի այլ տեղում էր: Ուղտը գիշերվա մթության մեջ փոխել էր ընթացքը, գտնելով իրեն հայտնի ճանապարհը, և ընթանում էր այնպիսի վեհությամբ, կարծես ոչ թե ինքը, այլ ողջ աշխարհն ու ողջ երկրագունդն էր պտտվում նրա տակ, երբ բարձրացնում էր ոտքը:

Հեռվում ինչ-որ մի բան փայլեց՝ կայծ էր, կամ լուսատու: Լույսը սկզբում մի կետ էր, հետզհետե ճառագայթի վերածվելով, շարժվում էր նրանց ընդառաջ: Տեսիլքով հմայված տղան սկզբում չհասկացավ, որ դա լապտեր է, երկաթուղային հողաթմբի մոտ կանգնած մարդու ձեռքում: Միայն այն ժամանակ, երբ ուղտը կանգնեց և լապտերի ծակող լույսի տակ տղան տեսավ արծաթափայլ մորուքը, ուշքի եկավ և ուրախ բղավելով. «Պապի՜կ», գլորվեց ներքև, որտեղ նրան սպասում էին. մեկնված ձեռքերը:

Պապը պառկեցրեց ուղտին: Տղային փաթաթեց խալաթի մեջ, ինքը նստեց ուղտի վրա և մնացած անելիքն ուղտն ինքը հասկանալով, ետ դարձավ: Սեղմըվելով պապի կրծքին և շնչելով նրա խալաթի սքանչելի բուրմունքը, տղան քնեց ավելի շուտ, քան պապը կհասցըներ պատմել, թե ինչպես վագոնիկը կոտըրվեց, և ինքը գնաց ոտքով, շարունակ մտածելով տղայի մասին:

*Թարգմ. ԱՐԱՄ ՄԵԼՔՈՆՅԱՆԻ*






ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Մայիս վերմակ է լցնում
Ճերմակ բրդով գառների,
Հավքի թևեր են թվում
Փափուկ, թեթև, փետրալի:

Երեսներին թափանցիկ,
Կարմիր քողեր է կարում,
Արևի թեժը առատ
Նրանց միջից է բուրում:

Երբ փռում է իր ձեռքով
Ցանկապատի թմբերին,
Ինձ թվում է վեր կելնեն
Կխառնվեն ամպերին:

Մշուշվում են ջուր ու ժայռ,
Հանգչում ծաղիկն իրիկվա,
Վերմակները ամպեղեն
Չեզ իջնում են մեզ վրա:



## «ՅԱՆԿԻՆԵ՛Ր, ԴՈՒ՛ՐՍ ԿՈՐԵՔ ԿԵՖԼԱՎԻԿԻՑ»

Իսլանդիան աշխարհի ամենահյուսիսային պետությունն է։ Իսլանդացիներն այնքան խաղաղասեր ժողովուրդ են, որ չեն ուզում նույնիսկ սեփական բանակն ունենալ։

Բայց ահա ամերիկյան գեներալների համար այդ հյուսիսային երկիրը հարմար ռազմական բազա է։

Սակայն իսլանդացիները չեն համակերպվում ամերիկյան զինվորականների ներկայության հետ, չեն ուզում մասնակից լինել ԱՄՆ-ի ագրեսիվ քաղաքականությանը։ Խաղաղասեր ժողովուրդը քաղաքների ու ավանների փողոցներն է դուրս գալիս «Յանկինե՛ր, դու՛րս կորեք Կեֆլավիկից» պլակատներով։

Ցուցարարների առաջին շարքերում հաճախ կարելի էր տեսնել երեխան գրկին մի կնոջ։ Դա Վիգդիս Ֆիննբոգադոտտիրն էր՝ հանուն խաղաղության և ԱՄՆ-ի զորքերը Իսլանդիայից դուրս բերելու պայքարի ակտիվ մասնակիցներից մեկը։ Իսլանդացիները հաճախ էին լսում նրա ելույթները երկրի մայրաքաղաք Ռեյկյավիկում ու մյուս քաղաքներում տեղի ունեցած միտինգներում։ Իսկ վերջերս Վիգդիս Ֆիննբոգադոտտիրին ընտրեցին իրենց պրեզիդենտ։

Նա առաջին իսլանդուհին է, որ այդքան կարևոր պոստ է զբաղեցնում։ Եվ առաջին կինը Արևմտյան Եվրոպայում, որ պետության գլուխ է կանգնել շնորհիվ իր անհաշտ պայքարի հանուն խաղաղության։



Աստղիկ

# Բույսերի

Մարդիկ դեռ հնուց ի վեր նկատել են, որ գրեթե բոլոր բույսերը խիստ զգայուն են եղանակային փոփոխությունների նկատմամբ։ Դա միանգամայն բնական է, քանի որ բույսը իր էությամբ ամբողջովին կախված է շրջակա միջավայրի՝ խոնավության, ջերմության, հողային, լուսային պայմաններից և դրանց փոփոխությունները անդրադառնում են առաջին հերթին բույսերի վրա։

Երբ խոնավությունը նվազում է, բույսերի տերևները թառամում են։ Երբ խոնավության պակասը մեծ է և երկարատև, միամյա բույսերը չորանում են,






ՍՈՎՈՐԻՐ ԿԱՐԴԱԼ ԲՆՈՒԹՅԱՆ ԳԻՐՔԸ

# օգնությամբ

իսկ բազմամյաները սկսում են հարկադրական տերևաթափը: Նույնպիսի երևույթ է նկատվում նաև ուժեղ շոգի դեպքում: Գարնանը, երբ անսպասելիորեն ցուրտ հոսանքներ են ներխուժում և տաք, արևոտ եղանակներին հաջորդում են ցուրտ, սառնամանիքային օրերը, ցրտահարվում են առաջին հերթին ծաղիկները, ապա՝ նոր բացված տերևները: Հիշո՞ւմ եք, անցյալ տարվա ապրիլի 15-ի և 16-ի հանկարծահաս ձյունատեղումները: Որքան բույսեր ոչընչացան, որքան բերք փչացավ:

Իսկ բույսերի միջոցով կարելի՞ է կանխագուշակել սպասվելիք եղանակը: Պարզվում է, որ կարելի է:

Մեր շրջապատի բուսածածկույթում, համարյա ամենուրեք տարածված է սովորական աստղիկ կամ ստելլարիա մեդիկա բույսը: Այն ռուսերեն կոչվում է «մոկրիցա»: Արտաքինից միանգամայն աննշան այդ բույսը օժտված է եղանակի զարմանալի «զգացողությամբ»: Դեռ հնուց ի վեր մարդիկ նըկատել են, որ անձրևից հետո աստղիկը սովորաբար դառնում է «բյուրեղապակյա»: Բանն այն է, որ բույսի ցողունները ծածկված են մանր մազմզուկներով, որոնք պահպանում են անձրևի կաթիլները: Վերջիններս արևի տակ

շողշողալով այնպիսի տպավորություն են թողնում, կարծես բույսը բյուրեղապակուց է։

Եթե մինչև առավոտյան ժամը 9-ը աստղիկի ծաղիկները խոնարհված վիճակից չեն բարձրանում և ծաղկաթերթիկները լրիվ չեն բացվում, ապա կարող ենք անսխալ կերպով գուշակել, որ ցերեկվա ընթացքում անպայման անձրև կգա։ Եթե վաղ առավոտից աստղիկի ծաղիկները զվարթ կերպով դեպի երկինք են նայում ու լրիվ բացված են, ապա սպասվում է պարզ եղանակ, և որքան էլ որ երկինքը պատած լինի ծանր ու գորշ ամպերով, միևնույն է, անձրև չի տեղալու։

Անձրևային եղանակի նկատմամբ առանձնապես զգայուն է սովորական պատատուկը։ Երբ սրա ծաղիկները ըսկըսում են փակվել, ապա իմացեք, որ շուտով անձրև է տեղալու։ Եթե նույնիսկ ամպամած եղանակի ժամանակ դրանք բացվում են, ապա պարզ, արևոտ եղանակ է սպասվում։

Երևի նկատել եք, որ անձրևից առաջ զբոսայգիներում ու պուրակներում, անտառներում ու տափաստաններում, մարգագետիններում, ծաղիկները զարմանալի ուժգնությամբ են բուրում։

Եղևնու երկար, չոր ընձյուղները ձյունաքքից առաջ ճկվում են, իսկ եթե հանգիստ, անհողմ եղանակ է սպասվում՝ ուղղվում են։ Տաք եղանակ պետք է ըսպասել այն դեպքում, երբ սառնամանիքի ժամանակ անտառը աղմկում է։ Եղանակի տաքանալու նշան է ծառերի եղյամով ծածկվելը։

Հնդկական անձրևածառի (սամանիա, սաման) տերևները զարմանալի ընդունակություն ունեն մթնոլորտային երևույթներին համապատասխան փոխելու իրենց դիրքը։ Պարզ, արևոտ օրերին այդ բույսի տերևները ընդունում են հորիզոնական դիրք, այնպես, որ խիտ սաղարթը բաց չի թողնում արեգակնային ճառագայթները, որի շնորհիվ ծառի տակ բավականին խիտ ստվեր է առաջանում։ Ամպամած օրերին կամ անձրևի դեպքում տերևները դասավորվում են զույգ-զույգ, ցած են կախվում, խիստ սեղմվում, որի հետեվանքով ծառի տակ միամտորեն պատըսպարվող ճանապարհորդը թրջվում է ոչ պակաս, քան բաց երկնքի տակ մնացածը։ Հնդկական թամարինդը գիշերը և ամպամած եղանակին ծալում, փոքրացնում է տերևների մակերեսը։

Հարավ-արևելյան Ասիայում աճում է տրախիկարպուս էքսցելեզա կոչվող արմավենին, որը եղանակը «կանխազգալու» զարմանալի հատկություն ունի։ Եթե ամպամած եղանակ է սպասվում, վաղ առավոտից բույսի տերևները «քրտնում են», ծածկվում ջրի մանր կաթիլներով, միաժամանակ ձգվածլարված տեսք են ստանում։

Բույսերի օգնությամբ կարելի է կանխագուշակել նաև առաջիկա սեզոնի բնույթը։ Օրինակ, սովորական արոսենին, որը հաճախ է հանդիպում մեր անտառների վերին գոտում և բնակավայրերում, մի զարմանալի ու հանելուկային հատկություն ունի։ Եթե սպասվում է տաք և երկարատև աշուն, արոսենին սովորականից շատ ուշ է ծաղկում։ Եթե ծաղկումը վաղ է սկսվում՝ վաղ էլ ավարտվում, դա նշան է, որ աշունը խիստ կարճատև է լինելու։ Անտառային շրջանների յուրաքանչյուր բնակիչ կարող է հաստատել, որ ընկուզենու կեղևի վրայի քարաքոսի հաստությամբ կարելի է որոշել, խստաշո՞ւնչ կլինի առաջիկա ձմեռը, թե՝ ոչ։

Որոշ բույսեր կարող են յուրահատուկ ջերմաչափի դեր կատարել. այնքան զգայուն են, որ օդի ջերմաստիճանի թեթևակի տատանումների ազդեցության դեպքում անգամ նկատելի փոփոխություն են կրում։ Այսպես օրինակ, կանադական հողայածառի տերևները

10 աստիճանից ցածր ջերմության դեպքում կծկվում, ոլորվում են, հնարավորության չափով նվազեցնելով տերևի մակերեսը։ 10 աստիճանից բարձր ջերմության դեպքում դրանք գեղեցիկ, ձըգված տեսք են ունենում։ Երբ օդի ջերմությունը անցնում է 25 աստիճանից, տերևները թառամելով կրկին ոլորվում են, ընդ որում տեղի է ունենում մի շատ զարմանալի երևույթ... միանգամայն պարզ, անամպ ու արևոտ եղանակի դեպքում ծառի սաղարթից կարծես մանրակաթիլ անձրև է տեղում, որի շնորհիվ նկատելիորեն խոնավանում է ծառի շրջակայքը։ Այս զարմանալի հատկության շնորհիվ կանադական հուղայածառը դասվում է հանրահայտ «անձրևածառերի» շարքը։

Էլ ավելի զգայուն է ջերմության տատանումների նկատմամբ շոկոլադի ծառը։ Ինչպես հայտնի է, բնական պայմաններում այս ծառը աճում է Կենտրոնական Ամերիկայում (Կոստա-Ռիկա և Էկվադոր), որտեղ արևադարձային ջունգլիներում տարվա ընթացքում օդի ջերմությունը և խոնավությունը գրեթե փոփոխություն չեն կրում։ Այդ բույսը իրեն հիանալի է զգում միայն այն ժամանակ, երբ օդի ջերմաստիճանը տատանվում է 24-ից 27-ի սահմաններում։ Բավական է, որ ջերմաստիճանը իջնի 24-ից, և ահա շոկոլադի ծառը «գրտահարվում» է։

Նման օրինակներ շատ կարելի է բերել։ Այսքանն էլ բավական է, որոշակի պատկերացում կազմելու համար, թե որքան զգայուն են բույսերը եղանակային փոփոխությունների նկատմամբ, և թե ինչպես կարելի է բույսերի վարքը ուսումնասիրելով կանխագուշակել եղանակը, սեզոնը, ջերմաստիճանային փոփոխությունները։

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*




●

Առաջին փոստային նամականիշը թողարկվել է Անգլիայում 1840 թվականին, Վիկտորիա թագուհու դիմանկարով։

●

Ամենահազվագյուտ նամականիշը համարվում է բրիտանական Գվիանայի նամականիշը, որը թողարկվել է 1856 թվականին և հայտնի է նրա միայն մի օրինակը։ Այդ նամականիշի պատմությունը այս է. բրիտանական Գվիանան Լոնդոնում նամականիշներ էր պատվիրել, սակայն նրանք ուշանում էին։ Նահանգապետը թույլատրեց տեղական տպարանում տպագրել նամականիշներ։ Նամականիշները կարմիր և կապույտ գույնի էին, չորս ցենտ արժողությամբ։ Ենթադրում են, որ միայն մի նամականիշ է բաց թողնված մեկ ցենտ արժողությամբ, հավանական է՝ նկարչի սխալի հետևանքով։ Այդ նամականիշը պատահմամբ հայտնաբերել է մի ֆիլատելիստ 1873 թվականին, իր ընտանեկան նամակների մեջ և վաճառել է վեց շիլինգով, չիմանալով նամականիշի իսկական արժեքը։ 1885 թվականին, երբ հայտնի է դառնում, որ այդ նամականիշը հազվագյուտ է, այն ձեռք է բերում Լոնդոնի մի առևտրական 25 ֆունտ ստեր-

լինգով՝ այն ժամանակ անասելի բարձր արժեքով: Առևտրականից նամականիշը անցել է հայտնի ֆիլատելիստ Ֆերարիի ձեռքը, իսկ նրա մահից հետո, Ֆրանսիական պետական աճուրդում, 1922 թվականին, այդ նամականիշը գնել է մի ամերիկացի միլիոնատեր, 70 հազար ռուբլի արժողությամբ ոսկով:

●

Աշխարհում հինգ միլիոն մարդ նամականիշներ է հավաքում:

●

Հունգարիայում ի պատիվ պլյումինի արտադրության հոբելյանի, բաց է թողնված մետաղյա նամականիշ՝ ինը հազարերրորդական միլիմետր հաստությամբ:

## ԱԼՅՈՒՄԻՆԸ ՄՐՑՈՒՄ ԷՐ ՈՍԿՈՒ ՀԵՏ

Ինչ-որ մեկի թույլ տված սխալի հետևանքով գրքերում և հոդվածներում լուրեր տպագրվեցին, իբրև թե անգլիացի քիմիկոսները Դ. Ի. Մենդելեևին ոսկուց և այն ժամանակ թանկարժեք պլյումինից կշեռք են նվիրել: Իրականում մեծ Բրիտանիայի թագավորական ինստիտուտը և Քիմիական ընկերությունը 1889 թվականին Դմիտրի Իվանովիչին ոչ թե կշեռք, այլ ոսկուց և պլյումինից պատրաստված գավաթ են ուղարկել, ըստ որում պլյումինն արդեն այն թանկ արժեցող նորությունը չէր, ինչպիսին էր 1850-ական թվականներին:

Իսկապես, 1854 թվականին «սպիտակ մետաղի» մեկ կիլոգրամը 1200 ռուբլի արժեր, ավելի թանկ, քան ոսկին (1.000 ռուբլի): Ահա թե ինչու Ֆրանսիայի կայսր Նապոլեոն III-ը, երբ ի-

# ՄԵՐ ՓՈՔՐԻԿ

Մարդու փոքրիկ, բայց անհաշտ թշնամիներից են մեզանում շատ տարածված, տարբեր տեսակի արյունածուծ տզերը: Նրանց որոշ տեսակներ ունեն 3,5 մմ երկարություն, կան և անհամեմատ մեծերը: Ապրում են քարերի տակ, ժայռերի ճեղքերում, քարայրներում, հողաշեն և ավերակ տների պատերի մեջ, կենդանիների բներում, որջերում, արոտավայրերում, անտառներում և այլուր: Նրանք, ընդհանրապես, փայտոջիլների նման, ավելի ակտիվ են գիշերները:

Տզերը հարձակվելով մարդու վրա, խրում են իրենց բերան-կնճիթիկը նրա մաշկի տակ, այնտեղ սրսկում են թըմրեցնելու հատկությամբ օժտված իրենց թուքը և ապա սկսում են ծծել զոհի արյունը: Մի քանի ժամվա ընթացքում ծծող տզի ծավալը մեծանում է 2—3 անգամ: Այդ ժամանակ նրանք վնասում են մաշկի խորին շերտերը, քայքայում մազանոթների պատերը, առաջացնում մաշկի քոր, ցան, գրգըռումներ, երբեմն էլ՝ օրգանիզմի ընդհանուր տենդային դրություն: Տզերի որոշ տեսակների խայթած տեղերում առաջանում են մուգ կարմիր հանգույցներ, շրջանակված բաց գույնի գոտիով, որը պահպանվում է մինչև 3 շաբաթ: Երբեմն այն վերածվում է խոցի:

Բացի այս անախորժ երևույթներից, նրանք մի շարք հիվանդությունների կրողներ և փոխանցողներ են, որոնց հարուցիչները (սպիրոխետները, վի-

ԹՇՆԱՄԻՆԵՐԸ

րուսները և այլն) նրանք ձեռք են բերում բնության մեջ գտնվող հիվանդ վայրի կենդանիներից: Այդ հիվանդություններից է, բարեբախտաբար այժմ շատ հազվադեպ, տզային հետադարձ տիֆը:

Անհրաժեշտ է զգույշ լինել արշավների, էքսկուրսիաների ժամանակ, և հետևել, որ տզերը չմակաբուծվեն մարմնի վրա: Այդպիսի դեպքում պետք է հնարավորին չափ արագ կերպով հեռացնել մաշկին կպած տզերը: Տիզը հեռացնելուց առաջ մշակում են նրա կցման տեղը յոդի ջրային լուծույթով, ապա ամուր թելից հանգույց են անցկացնում տզի կնճիթին՝ մաշկի մակերեսին շատ մոտ և տարուբերելով պոկում են տիզը, իսկ վնասված տեղը նորից մշակում յոդով:

Արոտավայրերում, անասունների հետ շփման հետևանքով, մարդ կարող է վարակվել նաև քոսով, որի հարուցիչը նույնպես փոքրիկ տիզ է: Այդ տիզը ընդունակ է առաջացնելու մաշկի եղջրային շերտում մեկ մմ-ից մինչև 2 սմ երկարության ուղիներ, որտեղ նա ապրում, զարգանում և բազմանում է, առաջացնելով անտանելի քոր և մաշկի ախտահարում: Քոսը վարակիչ է: Այն հայտնաբերելու դեպքում հարկավոր է դիմել մոտակա բուժհիմնարկություն, ուր կօգնեն հիվանդին ազատվելու տհաճ և անկոչ ուղեկիցներից:

*Վ. ԽԱՉՈՅԱՆ*
*բժիշկ, կենսաբանության թեկնածու*




մացավ, որ քիմիկոս Սենտ-Քլեր-Դևիլի մշակած նոր մեթոդի շնորհիվ նշանակալի քանակությամբ ալյումին է ստացվում, որոշեց զսրմացնել իր պալատական և արտասահմանցի հյուրերին: Երբ գիտնականը մետաղի առաջին խոշոր քանակությունը ստացավ, կայսրը այն հանձնեց Փարիզի ոսկերիչներին՝ առաջիկա պարահանդեսի համար բազմաթիվ կրծքազարդեր, օղեր և ապարանջաններ պատվիրելով: Բայց, ավա՜ղ, սենսացիա տեղի չունեցավ: «Պարողների վրայի զարդարանքները գունատվեցին, քրտնքից օքսիդացան, մի թեթև քերծվեցին և նախնական փայլը կորցրեցին, այսինքն պարահանդեսից հետո որպես զարդարանք այլևս պիտանի չեղան,— հենց Դևիլի խոսքերով պատմում էր Դմիտրի Իվանովիչը,— ալյումինի երազային կողմը այսպիսով սկզբից ևեթ տապալվեց...»:

Բայց թող թույլ տրվի մեզ չհամաձայնել մեծ քիմիկոսի հետ: Ալյումինը որպես ոսկերչական նյութ չարդարացրեց իրեն, բայց ինչ վերաբերում է «երազային կողմին», այն իրեն արդարացրեց հետագայում. կես դար հետո հենց ալյումինի շնորհիվ իրականացավ մարդկության նվիրական երազանքը՝ օդային տարածության նվաճումը:




Լիզ Միտչել, Մեյզի Ուիլյամս, Մարսիա Բարրետ, Բոբի Ֆարրել... Առանձին-առանձին այս չորս անունները գուցե ոչինչ չեն ասում շատերին, բայց «ԲՈՆԻ Մ» անվան տակ նրանք հայտնի են ամբողջ աշխարհին:

Ոչ ոք չի կարող ասել, թե ինչ է նշանակում Բոնի Մ: Այդ, իրոք, ոչինչ չնշանակող անվանումը Ֆրենկ Ֆարիանի երևակայության արդյունքն է, մի մարդու, որը 1975 թ. կազմեց վերոհիշյալ անսամբլը. և ոչինչ չնշանակող անունը կարճ ժամանակում հոմանիշ դարձավ բարձր մեղեդայնության, ճաշակի և, վերջապես, ժողովրդականության:
Մինչև 1975 թ. անսամբլի երեք աղջիկներն էլ արդեն բավականին ճանաչված երգչուհիներ էին (հատկապես Լիզ Միտչելը), իսկ Բոբի Ֆարրելը ճանաչված դիսկ-ժոկեյ էր, բայց իսկական համբավ նրանց բերեց ստեղծագործական համագործակցությունը:

Անսամբլի անդամները չեն թաքցնում, որ ձգտում են լավագույնը լինել իրենց ժանրում: Իսկ իրենց հաջողության գաղտնիքը բացատրում են այսպես. «Մեր աշխատանքը մեր ուրախությունն է: Մենք զբաղվում ենք նրանով, ինչի մասին միշտ երազել ենք: Յուրաքանչյուր ելույթ մեզ համար տոն է: Մեր գործերը միշտ միասին ենք քննարկում և միասին էլ վճիռ կայացնում: Մենք կարծես մի ընտանիք լինենք»:

Բոնի Մ-ը ելույթներ է ունեցել բոլոր աշխարհամասերում ու տասնյակ երկրներում, իսկ 1979 թ. նրանք մեծ համերգով հանդես եկան Մոսկվայի կենտրոնական հեռուստատեսության Օստանկինոյի համերգասրահում:




Անսամբլի սռանձնահատկություններից մեկն էլ այն է, որ սովորաբար նրանք խուսափում են մեծ դահլիճներում ելույթ ունենալ: Այդ «քմահաճույքը» խմբի ղեկավար Ֆրենկ Ֆարիանը այսպես է բացատրում.

«Եթե մենք հանդես գանք մեծ դահլիճներում, ապա ստիպված կլինենք կատարել նաև մեր ոչ լավագույն երգերը: Իսկ նման բան մենք չենք կարող մեզ թույլ տալ: Ոչ, մենք չենք վախենում, թե անհաջողության կմատնվենք: Մենք պարզապես չենք հանդուրժում միջակությունն ու գորշությունը»:




և փոքր եղբորս՝ Հրանտիկի միջև ընդամենը երկու տարվա տարբերություն կա: Իհարկե, նա ինձնից քիչ է փոքր, բայց փաստը մնում է փաստ և այդ մասին չպետք է մոռանային ոչ մեր տատերը, ոչ մեր ընկերները և առավելապես ինքը՝ Հրանտիկը:

Ամառային շոգ օր էր: Ես ու Հրանտիկը այգում առվակներ էինք փորում անձրևաջրի համար: Աշխատանքով տարված, մենք չէինք նկատել, որ արևը արդեն վաղուց զենիթում է, և բոլոր կենդանի արարածները՝ շները, հավերն ու նույնիսկ միջատները, շոգից թաքնվել են ծածկերի, ծառերի ու թփերի տակ:

— Գևորգ, Հրանտիկ, որտե՞ղ եք:

Մեծ-մայրիկն էր կանչում:

— Այստեղ ենք,— միաձայն գոռացինք մենք թթենիների տակից:

— Եկեք մածուն կերեք:

Ամռվա շոգին փորձած կա՞ք կավե կճուճում մերած թարմ, սառը մածունը: Հավատացեք, աշխարհիս երեսին ոչ մի բան այդպես չի հագեցնում ծարավն ու քաղցը: Ահա թե ինչու ես ու Հրանտիկը չտիպեցինք, որ երկրորդ անգամ խնդրեն մեզ և վայրկենապես բահերը ցած գցեցինք ու վազեցինք պատշգամբ:

— Սա քեզ, սա էլ քեզ,— ասաց մեծ մայրիկը ամենքիս առաջ մի-մի կավե թաս դնելով: Կավե թասերի թեք կողերը քրտնել էին ու խոնավությունից փայլում էին լույսի տակ:

Առանց ժամանակ կորցնելու Հրանտիկը մածունն առաջը քաշեց ու սկսեց գդալով ուտել, իսկ ես մատով իսկ չդիպա ամանին:

— Դու ինչի՞ ես սպասում:

Ես լուռ ու մռայլ հայացքս հառեցի առաջս դրած մածնին և դժգոհությամբ թափ տվի ուսերս ու գլուխս:

— Ինչո՞ւ չես ուտում— անհանգստացած հարցրեց մեծ-մայրիկը:— Հո չե՞ս հիվանդացել, Գևորգ ջան: Ախր դու մածուն սիրում ես:

— Չեմ ուզում:

— Ախր, ինչո՞ւ...

Ես հայացքս ուղղեցի նրան:

— Ես քանի՞ տարեկան եմ, մեծ-մայրիկ:

— Տասնմեկ,— տարակուսանքով պատասխանեց տատս:

— Իսկ Հրանտի՞կը...

— Ինը:

— Բա ինչո՞ւ ես ինձ էլ նրան էլ նույն




չափի թասերով տվել մածունը:

Մեծ մայրիկը շվարած ճպճպացրեց աչքերը:

— Դա քեզ համար քի՞չ է:

— Մեծ-մայրիկ, բանը քիչ ու շատում չի,— համբերությամբ բացատրեցի ես:— Ավելի լավ է ասես. մեզանից ո՞վ է մեծ:

— Դե, դու...

— Եթե ես եմ մեծը, ուրեմն իբրև ավագի, ինձ մեծ ամանով է մածուն հասնում, իսկ Հրանտիկին՝ փոքր:

— Բայց դու այդքանը չես կարող ու-



տել,— բացականչեց տատս։— Այն ամանը լիտրից ավելի է տանում։

— Ո՛չ, կուտե՛մ։ Եթե Հրանտիկը կես լիտրանոց թասով է ուտում, ես լիտրանոցով կարող եմ ուտել,— համառեցի ես։

Մեծ-մայրիկը մի երկու վայրկյան զարմացած նայեց ինձ, հետո ձեռքը թափ տվեց, գնաց մառան, մեծ թասով մածուն բերեց և դրեց առաջս։

— Առ քեզ մեծ թասով մածուն, բայց տես հա, եթե չուտես՝ գլխիդ եմ լցնելու,— ասաց մեծ-մայրիկը և մեծ պղնձե կուժն ուսն առնելով գնաց ջրի։

Ապացուցելով իմ անտարակուսելի ավագությունը, ես հաճույքով առաջս քաշեցի հսկայական ամանն ու սկսեցի ախորժակով ուտել, զգալով ինձ ուղղված Հրանտիկի հայացքը, որն արտահայտում էր, ազնիվ խոսք, հարգանքի կամ հիացմունքի նման մի բան։

Հրանտիկն արդեն ավարտել էր իր մածունը և հետաքրքրությամբ նայում էր իմ և հսկայական թասի մենամար-

տին: Քանի որ դա իսկապես մենամարտ էր, ես դժվարությամբ էի կուլ տալիս մածունը և արդեն ափսոսում էի, որ ագահություն եմ արել: Մյուս կողմից, ես ավագն եմ և ինչպես դուք արդեն նկատեցիք, չէի կարող տանել, երբ ուրիշները չէին ուզում նկատել այդ:

— Հը՛, էլ չի՞ տեղավորվում,— հարցրեց Հրանտիկը քմծիծաղով:

Ես գդալը մի կողմ դրի և ցուցադրական անտարբերությամբ ուսերս թոթվեցի, նրան չարժանացնելով պատասխանի:

*Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ*



— Շուտ արա կեր, թե չէ մեծ-մայրիկը կվերադառնա և գլխիդ շուռ կտա թասը,— բարձր-բարձր ծիծաղելով ասաց Հրանտիկը:

Այդ էր պակաս: Ինձ, ավագիս, խորհուրդ էին տալիս թե ինչ անեմ: Կարծես ես ինքս չգիտեմ իմ անելիքը:

— Իսկ ինչու պիտի նա անի, ես ինքս էլ կարող եմ անել,— ասացի ես և մնացած մածունը լցրի գլխիս:

Զարմանքից Հրանտիկի բերանը բաց մնաց:

— Բերանդ փակիր, թե չէ ճանճ կընտնի,— ասացի ես:

— Ա՜յ քեզ բան,— բացականչեց Հրանտիկը:

Ես նստել էի և զգում էի թե սառը մածունն ինչպես է ներս լցվում օձիքիցս, երեսովս թափվում ուղիղ կրծքիս: Ուզում եք հավատացեք, ուզում եք՝ չէ, բայց այդ օրվա շոգին դա նույնիսկ հաճելի էր: Իսկ եթե այդպես էլ չլիներ, ես այդ բանը ցույց չէի տա նրան, ինձնից պստիկ եղբորս: Իսկ որ ես նրան ապշեցրել էի, կարող եք չկասկածել. մինչև տատի գալը նա այդպես էլ նստել-մնացել էր, կարծես կորցրել էր խոսելու ընդունակությունը:

Հարկ կա՞ պատմելու, թե ինչպես զայրացավ մեծ-մայրիկը, երբ աղբյուրից վերադառնալով տեսավ, որ ես մածնաթաթախ նստած եմ թախտին:

— Վա՜յ, անպիտա՛ն տղա,— հարձակվեց նա ինձ վրա:— Էս ի՞նչ ես բերել գլխիդ, հը՞: Ինչո՞ւ ես մածունը լցրել վրադ,— ճչում էր մեծ-մայրիկը, որն առաջ երբեք ձայնը չէր բարձրացնում:— Մարդիկ հիմա քաղցած են, իսկ դու ի՞նչ ես արել, անպիտա՛ն տղա:

Ինչ ճիշտ է, ճիշտ, ես այդ մասին չէի էլ մտածել: Ազնիվ խոսք, ես բոլորովին շփոթվեցի:

— Բա դու ինձ չասացի՞ր, որ գլխիս կլցնես, եթե բոլորը չուտեմ,— արդարանում էի ես:— Ես էլ ինքս լցրի, որ դու նեղություն չքաշես...



ԿԱՐԴԱՑ ԱՅՍ ԳԻՐՔԸ

# ՊԻԵՌ ԲՈՒԼ

# ԿԱՊԻԿՆԵՐԻ ՄՈԼՈՐԱԿԸ

Հնարավո՞ր բան է, որ գիտահետազոտական ինստիտուտի գիտնականները կապիկներ լինեն, իսկ փորձերը դրվեն... մարդկանց վրա: Հնարավո՞ր է, որ անտառում շուրջկալ սարքեն որսորդ կապիկները, իսկ նրանց ցանցն ընկնեն... մարդիկ: Դերերի այս անհավանական տեղափոխությանը մենք հանդիպում ենք ֆրանսիացի գրող Պիեռ Բուլի «Կապիկների մոլորակը» ֆանտաստիկ վեպում:

2500 թվականին Երկիր մոլորակից տիեզերական հեռավոր ճանապարհորդության մեկնած տիեզերանավը վայրէջք է կատարում Սորորա մոլորակի վրա, որտեղ տիեզերագնացները հայտնաբերում են վայրենի մարդկանց և միանգամայն քաղաքակրթված կապիկների: Ի՞նչ է պատահել, ինչու՞ է այստեղ քաղաքակրթությունը զարգացել տրամագծորեն հակառակ ուղղությամբ: Այս հարցը տանջում է ոչ միայն ընթերցողներին, այլև վեպի գլխավոր հերոսին՝ Ուլիս Մերուին: Երբեք բանական մարդ չտեսած կապիկները չեն ուզում հանձին Ուլիս Մերուի բանական արարած տեսնել, և սկսվում են վերջինիս մեկը մյուսից զարմանալի արկածները Սորորա մոլորակի վրա:

Քննադատները «Կապիկների մոլորակը» գիրքը համեմատում են Սվիֆտի «Գուլիվերի ճանապարհորդության» հետ: Այս համեմատությունը պատահական չէ: Սվիֆտը իր հանրահայտ վեպը գրել էր, որպեսզի ժամանակակիցների հետ խոսեր այն արատների մասին, որոնք մարդուն խանգարում էին մարդ լինել: Նույն մտահոգությունն ունի նաև Պիեռ Բուլը: Ժամանակակից մարդուն սպառնացող ամենամեծ վտանգը նա համարում է սպառողական հոգեբանությունը, մարդու կախվածությունը իրերից, հոգևոր արժեքների կորուստը: Սա է եղել Սորորա մոլորակի մարդկանց գլխին եկած աղետի պատճառը, սրանից է նա զգուշացնում Երկիր մոլորակի մարդկանց:

«Կապիկների մոլորակը» վեպը, որը հայերեն լույս է ընծայել «Սովետական գրող» հրատարակչությունը, իհարկե, կարելի է կարդալ որպես սոսկ լարված սյուժե ունեցող հետաքրքիր գիրք, իսկ ավելի խոր ու լուրջ ընթերցանության դեպքում (որն էլ ցանկանում ենք մեր ընթերցողներին)՝ որպես խորապես ցնցող պատմություն մարդկանց և մարդկային արժանապատվության մասին:

Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ









ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱ-ԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-38, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 7 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1981



Շապիկի առաջին էջը ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 21.4.1981 թ.: Ստորագրված է տպագրության 9.7.1981 թ.: ՎՖ 10290: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 3,9 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 61662: Պատվեր 884: Գինը 15 կ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. 2։

Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.

# ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ

Երևան քաղաքի Դ. Դեմիրճյանի անվան դպրոցի այս տարվա շրջանավարտ Գագիկ Նահապետյանը թույլ է տվել մի արարք, որի անունն է գրագողություն, արարք, որի համար սովետական օրենսդրությամբ դատական պատասխանատվություն է սահմանված: Գագիկ Նահապետյանը տարիներ ի վեր դպրոցում բանաստեղծի սուտ համբավ վայելելով, արտագրել է Ռազմիկ Ղալայանի 1977 թ. լույս տեսած «Կապույտ աստղեր» խորագիրը կրող բանաստեղծությունների գրքույկը, թյուրիմացության մեջ գցել դպրոցի ուսմասվարին, ինչպես նաև իր հայոց լեզվի և գրականության ուսուցչուհուն, նրանց երաշխավորությամբ Ռազմիկ Ղալայանի բանաստեղծությունները ներկայացրել խմբագրությանը, իբրև սեփական ստեղծագործություններ, որոնք և տպագրվել են «Պիոներ»-ի այս տարվա № 5-ում: Ինչպես վկայում է ժողովրդական իմաստուն ասացվածքը՝ մախաթը պարկում չես պարտակի: Գագիկ Նահապետյանը անմիտ փառասիրությամբ իր ուսուցիչներին, ընկերներին և մանավանդ խմբագրությանն ու ընթերցողներին կանգնեցրել է անախորժ փաստի առջև: Խմբագրությունում նրանք, ովքեր պարտավոր էին կեղծիքը ժամանակին բացահայտել, ենթարկվել են պատասխանատվության:

## ԺԱՄԱՆՑ

Էլեկտրական սպառիչներից յուրաքան-չյուրի փչանալու դեպքում մյուսներից ո՞րը չի գործի և ինչու:






Հնակառույց շենքեր Աբովյան, Սպանդարյան և Տերյան փողոցներում:

Լուսանկարները՝ ԴԱՎԻԹ ՆԵՐՍԻՍՅԱՆԻ





